# ԳԷՈՐԳ ՎԱՇԻՆԳԹՕՆ

Գերմաներէնից թարգմանեց

ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ

ԵՐԿՐՈՐԴ ՏԻՊ

ԹԻՖԼԻՍ
ՏՊԱՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ
ՕՐԲԵԼԵԱՆ ՓՈՂՈՑ Տ. 1|2.
1885

# ԳԷՈՐԳ ՎԱՇԻՆԳԹՕՆ

*«Ես միշտ զարմացել եմ Ձեր առաքինութեան, Ձեր անձնուէր հայրենասիրութեան, Ձեր անվկանդ քաջութեան եւ բարքի պարզութեան վրայ — յատկութիւններ, որոնցով Դուք գեր 'ի վերոյ էք, քան թէ հնութեան ամենահռչակաւոր մարդիկը»։*

Կոմս Հէրցբէրգ, նախարար Մեծին Ֆրէդէրիկոսի։

*«Վաշինգթօն առաջինն էր պատերազմի մէջ, առաջինն էր խաղաղութեան ժամանակ եւ առաջինն իւր հայրենակիցների սրտում։»*

Ջօն Մորլի։

## Ա

## ՄԱՆԿՈՒԹԵԱՆ ՕՐԵՐ

Բնութեան մէջ շատ բան կայ, որի տեսութիւնն ամբառնում է մեր ոգին—երկինքն իւր բիւրեղեայ պարզութեամբ, իւր պայծառ արշալուսով, վերջալուսով և գիշերային աստեղսփայլ կամարով, բուրաւէտ անտառը, գրաւիչ

դաշտանկարը, ծառը, ծաղիկը, անհուն ծովն և որ մէկն ասե՛նք։ Սակայն մեր սրտին տիրող զգացմունքն շատ առաւել վսեմ է լինում, երբոր դիտում ենք մի ազնիւ մարդկային հոգի և ուշադիր զննում ենք սրա աճումը մինչեւ կատարելութիւն։

Այն ժամանակ մեր սրտի վրայ ասես թէ փոշի է թօթափվում այդ մեծ և բարի հոգու ծաղկից, զօրացնելով մեր մէջ լաւն ու բարին։

Մենք տեսնում ենք այն ժամանակ, թէ ո՞վ ենք. մեզ համար պարզվում է, թէ ինչ բանի կարող ենք հասնել, եթէ բարւոյ սիրոյն հետ միասին սրան թեկնածելու կամքն էլ զօրացնենք մեր մէջ։

Հին դարերում բարի և մեծ մարդիկն աստղերի հետ էին համեմատվում։ Սրանք լուսափայլ շողմամբ բարձրանում են մարդկութեան հորիզոնի վրայ, փարատելով շրջակայ մէգն ու խաւարը, և մնում են տեսանելի նա և ապագայ սերունդներին։ Այսպէս նրանք դառնում են երկնային նշաններ՝ ստորեւում շրջողների համար։

Այն լուսատու հոգին, որի վրայ կամենում ենք այժմ ուղղել կատարելութեան ձգտելու հակումն և սէր ունեցող երիտասարդի միտքը, յերեւան եկաւ Վիրգինիայի հեռաւոր անտառնե-

րում, հիւսիսային Ամերիկայի մէջ, և յատկապէս 22 փետրվարի 1732։

Այն տեղ էր որ փոքրիկ Գէորգն բաց արաւ օրորանի մէջ իւր սիրուն աչքերն և ժպտալով նայեցաւ աշխարհի վրայ, որ այնքան հոգսեր պիտի պատճառէր նրան. այն տեղ էր որ սև ստրկուհին նստում էր նրա հետ դրան առջև և նրան զուարճացնելու համար հացի փշրանք էր տալիս հնդուհաւերին և աղաւնիներին. այն տեղ էր որ նա հողմաշարժ ծառերի տակ խաղալով, շինեց իւր առաջին փայտէ ձին։

Գէորգի հայրն, Աուգուստին Վաշինգթօն, մի հողատէր էր և ծագմամբ անգլիացի։ Նրա պապն Անգլիայից գաղթել էր հիւսիսային Ամերիկա, որ առաջ հնդիկների երկիր էր։ Վերջը «Ամերիկայի ազատ նահանգներ» կոչուած երկիրը դրեթէ ամբողջ Եւրոպայի չափ մեծացաւ։ Մեզնից երկու հարիւր տարի առաջ այս ահագին տարածութիւնը ծածկուած էր անեզր անտառներով, թաւուտ մացառներով, ընդարձակ ճահիճներով և [illegible] ասուած սիզաւէտ դաշտերով։

Թափահանօկ գետի արևելեան ափի վրայ շինուած հարուստ տան մէջ, որ Գէորգի օրորանն էր, թագաւորում էին բարեպաշտութիւն, աշխատասիրութիւն և ազնուութիւն. սրանք էին

այն նախընծայ պարգևները, որ շնորհեցին երկինք մանուկ Գէորգին։

Անգլիացի գաղթականները ջոկ ջոկ էին ապրում անտառների մէջ և երբեմն միանում էին եկեղեցի և վարժարան շինելու համար։ Սակայն Վիրգինիայի այն ժամանակուայ վարժարանները դեռ շատ աղքատին դրութեան մէջ էին և սովորցնում էին միայն գրել, կարդալ և համրել։ Նորեկ գաղթականներն ուրիշ բան չէին պահանջում իրենց զաւակների կրթութեան համար, իսկ հարուստների որդիներն Անգլիայի մէջ էին ուսում ստանում։ Այսպէս Անգլիա առաքուեցաւ և Գէորգի խորթ եղբայրն՝ Լօրէնց Վաշինգթօն։ Լօրէնց տասնչորս տարով մեծ էր Գէորգից, երբոր Անգլիա գնաց. այս միջոցին Գէորգ գրեթէ մի գրկի մանուկ էր, ուստի և չէր կարանում մտաբերել եղբօր պատկերը։ Լօրէնց իւր վերադարձին մի գեղեցիկ երիտասարդ էր, իսկ Գէորգ այս միջոցին ութամեայ համբակ։ Քաջ կրթուած և լաւ դաստիարակուած երիտասարդի վերադարձը մի մեծ ուրախութիւն էր բոլոր տան համար. Գէորգ խկոյն սիրեց նրան, քանչորս տարեկան Լօրէնցն էլ պատասխանեց նրան ամենաջերմ մտերմութեամբ, և այսպէս մի ամուր բարոյական կապ հաստատուեցաւ երկուքի մէջ։

Դարձեալ մի որդի Անգլիա ուղարկելն չէր անցնում հօր մտքից. նա կամենում էր, որ իւր մահից յետոյ Լօրէնց լինէր տան գլուխը, և գոհ էր, որ գէթ աւագ որդին ճոխ ուսում առած մի կրթուած մարդ էր։

Այս պատճառով Գէորգին Թաղական վարժարան տուին։ Նա ջերմեռանդ ուսումնասիրութեամբ ընդունեց, ինչ որ միայն կարող էր աւանդել այս վարժարանն, և դրանով հիմք դրաւ իւր յետագայ ինքնակրթութեան։ Նա բոլոր դասերն էլ մեծ փութով էր ուսանում, խղճի մտօք և ճշտութեամբ էր պատրաստում. Նրա գրչի տակից մի տառ անգամ չէր դուրս գալիս, որ անուշադիր և վեր ի վերոյ գրուած լինէր։ Ապացոյց—Նրա աշակերտութեան մաքուր տետրակները, որոնք մինչև այս օրս պահուած են։ Նոյն ջանասիրութիւնը նա ցոյց էր տալիս և իրեն յանձնուած տնային գործերի մէջ. ինչ բան էլ ապսպրէին նրան, աշխատում էր ըստ կարելւոյն լաւ կատարել, թէ կարևոր և թէ չնչին լինէր այդ բանը։ Նա դեռ չէր հասկանում հարկաւ, թէ ինչ մեծ նշանակութիւն պիտի ունենար այս սովորութիւնն իւր հոգեկան զարգացման համար և առաջնորդվում էր միայն իւր պարտքն անթերի կատարելու և ամեն բան ուղիղ գործելու բարի կամքով։ Նա

յետոյ միայն ճանաչեց աշխատասիրութեան մեծ խորհուրդը, որ է՝ կազդուրել հոգեկան ոյժերը։ Մարդս ինչ էլ անելու լինի, կարող է կամ լաւ անել կամ վատ։ Փորձեցէ՛ք բոլոր զօրութիւնդ և տեսէ՛ք, որ գործդ քիչ թէ շատ յաջողում է, իմացէ՛ք, որ այս գործից աւելի բան արած եղաք, պատճառ ներքին կատարելութեանդ վրայ վաստակեցաք։ Ով որ վերահաս լինի այս բանին, նրա համար ըստ երևոյթին դժուար գործն անգամ հաճելի կ՚դառնայ։

Բարոյականին վերաբերեալ գործերի մէջ էլ նոյն բարեխղճութեամբ էր վարվում Գէորգ. սիրտը կրքոտ էր, բայց նա աշխատում էր սանձահարել դրան զօրեղ կամքով. այս էր պատճառը, որ ընկերները միշտ նրան էին դիմում վէճի ժամանակ և նրա վճռին հնազանդում։ Ամենքն գիտէին, որ նա ինչքան էլ սխալուէր գրգռուելով, իսկոյն էլ կ՚ուղղէր այս սխալը, որովհետև նրա համար գլխաւոր բանն արդարութիւնն էր, ոչ թէ անձնաւորութիւնը։ Եւ ինչպէս չ՚հնազանդէին մի այսպիսի ընկերի։

Վաղ յերևան եկաւ նրա բնաւորութեան և մի ուրիշ յատկութիւնը, որ էր պապերից ժառանգած պատերազմական ոգին։ Նրա պապերը զինուորական քաջութեամբ անուանի եղած մարդիկ էին Անգլիայի մէջ. նոյն ապետա-

կան աշխոյժն երեւում էր եւ Լօրէնցի վրայ։

Սպանիացիք իրենց աւազակութեամբ մեծ վնաս էին հասցնում անգլիական վաճառականութեան Արեւմտեան Հնդկաստանի մէջ։ Երբոր Անգլիան սկսաւ զրահաւոր նաւեր կազմել դրանց յանդգնութիւնը պատժելու համար, նա Վիրգինիայի գաղթականներին էլ հրաւէր կարդաց զէնք վերցնելու նրանց դէմ։ Այն ժամանակ Լօրէնց յօժար կամքով բանակ մտաւ եւ հարիւրապետի պաշտօն ընդունեց։ Այս դէպքը մի տեսակ աղմուկ ձգեց Վաշինգթօնի տան մէջ. միայն Գէորգն էր, որ սրտանց համակրում էր եղբօր նպատակին։ Նա շատ անգամ լսած լինելով աւազակների չարութեանց լուրը, բոլորովին համոզուած էր, թէ նրանք պատժի արժանի էին. նա խորին ակնածութեամբ, գրեթէ հիացմամբ էր դիտում եղբօր զէնքերն եւ հենց այժմէն երգում էր տալիս՝ մի օր անձամբ մարտնչելու անմեղ մարդիկների հանդէպ վրդովող չարութեան դէմ։ Նոյն միջոցին նա նորից լսում էր իւր քաջ պապերի պատմութիւնն եւ բնական է, որ Լօրէնցի մեկնելուց յետոյ ագահութեամբ կուլ էր տալիս նրա նամակները, մանաւանդ երբ ռազմական դէպքեր յիշուած լինէին նրանց մէջ։

Այնուհետեւ Գէորգ գնդակի եւ սրա նման

խաղերի տեղ՝ զինուորական մարզմունք սիրեց. գունդ գունդ բաժնել դասընկերներին, պատերազմի կարգեր սահմանել, զէնք ընտրել, ճակատ կազմել, զօրահանդէս անել, հրամաններ տալ—այս եղաւ այժմ նրա զբաղմունքը, և փոքրիկ զինուորների մէջ մէկը չ՚կար, որ նրա անձնիշխան հրամանատարութեան դէմ բողոքէր։ Սակայն ոչ ոք չէր գուշակում, որ այս զբաղմունքն էլ մասամբ իւիք նրա ապագայ կեանքի նախագիծն էր։ Ինչպէս որ առաջ դաստաւորի պաշտօն էր վարում իւր փոքրիկ շրջանի մէջ, այնպէս էլ այժմ վարում էր հրամանատարի պաշտօնը, հաւատարիմ մնալով իւր բնութեան բուն յատկանիշին, որ էր ճշգրտութիւն ամեն գործի մէջ։ Նա գիտէր, թէ ինչ յատկութիւն է հարկաւոր զինուորին և անդուլ եռանդով հրանգվում էր մարմնին կորով ու տոկ տալով մարզերի մէջ, ինչպիսի են գօտեմարտը, վազելը, ոստնումը, լողալը, տէգ ձգելն և այլն։ Փոքրիկ վաշտերի պետը ձգտում էր իրաւամբ պետ լինել և ջան էր դնում, որ իւր ներքին արժէքը լինի յարմար դար կրած տիտղոսին։

Լօրէնց Կարլթադէնի պաշարումից յետոյ տուն վերադարձաւ։ Կարող ենք երևակայել, թէ ինչ եռանդով էր ականջ դնում նրա

բերանացի պատումներին պատանի Գէորգը։

Լօրէնց վաղուց մտադիր էր նաւաստի աշակերտ անել Գէօրգին անգլիական ծառայութեան մէջ. այժմ պատանու զինուորական մարզմունքների վրայ տեղեկութիւն ստանալուց յետոյ, նա և՛ս առաւել կամեցաւ կատարել իւր դիտաւորութիւնը, որին ծնօղներն էլ համաձայն էին։ Այս միջոցին Լօրէնց նշանուեցաւ Վիլլիամ Ֆէրֆաքս անուն մի հարուստ կալուածատիրոջ աղջկայ հետ. սակայն նրա հայրն արժանի չեղաւ որդու հարսանիքը տեսնելու, պատճառ որ յանկարծ հիւանդացաւ և մեկնեցաւ այս աշխարհից։

Այս պատուական հօր թաղման ժամանակ Գէորգ տասնմէկ տարեկան էր. հանգուցեալն իւր երկու ամուսնութիւնից ծագած զաւակների համար բաւական ընդարձակ կալուածներ թողաւ, որոնցով նրանց ապրուստը լիովին ապահոված պիտի լինէր։ Լօրէնց մի ագարակ ժառանգեց Պօթօմակ գետի վրայ, ուր և հաստատուեցաւ իւր նորատի կնոջ հետ։

Կրտսեր որդիների վրայ մի հոգաբարձութիւն չէր նշանակուած կտակի մէջ, այլ դրանք մինչև չափահաս լինելն մնալու էին մօր խընամքի տակ, որից յայտի երևում է թէ այս կինը մեծ համարում ունէր ննջեցեալ ամուսնու

առջև։ Այս կնոջ մասին Վաշինգթօն Իրվինգ պատմաբանն ասում է, թէ «Պարզ և առողջ մտքով, պնդութեամբ, բայց և գթարար էր կառավարում իւր ընտանիքն, մեծարանք և սէր ազդելով ամենքի սրտին»։ Նա հանդուցեալ մարդու երկրորդ ամուսինն էր և իւր զաւակներից սիրում էր մանաւանդ անդրանիկ Գէորգին։ Սակայն չնայելով այս սիրոյն, դուցէ և սրա պատճառով իսկ, պէտք եղած ժամանակ խստիւ էր վարվում նրա հետ, որպէս զի զերծ մնայ չարութիւնից, և Աստուած օրհնում էր մօր բարի խնամքը։ Վիրգինիայի բարեկիրթ գաղթականների մէջ մեծ համբաւ էր վայելում այն ժամանակ Սիր Մէթյու Հիլսի «Բարոյական և աստուածաբանական խորհրդածութեանց գիրքը»։ Այս գիրքը Գէորգի մօր սիրելի մատեանն էր, որից նա չէ թէ միայն իւր համար էր խրատ և ոյժ ստանում, այլ և որդիների համար։ Տան բարեկամները ներս մտնելիս շատ անգամ տեսնում էին նրան այս գիրքը ձեռին տղաների մէջ տեղ նստած։ Այս կինը յիշեալ բարեկամների և իւր յատուկ զաւակների վկայութեամբ ոչ թէ միայն հմուտ էր յօղուածների ընտրութեան մէջ, հապա և ընդունակ՝ ազդելու մատաղ ունկնդիրներին այն բարոյական վսեմ զգացումները, որոնցով ինքն էլ հա-

մակվում էր Հիլսի և կամ ուրիշ իմաստասէրների գրուածքը կարդալիս։ Նա գիտէր իւր սրտի եռանդը տղաներին ևս ներշնչել, և որովհետև տան բոլոր կեանքն բարոյական սուրբ ոգով էր թափանցուած, ուստի մանուկների ընդունած տպաւորութիւնները չէին ջնջվում, այլ մանաւանդ զօրանում։ Վերոյիշեալ գրքի օրինակը, նոյն իսկ մօր գրչի «Մարիամ Վաշինգթօն» վերնագրով, մնաց Գէորգի մօտ մինչև իւր վերջին շունչն իբրև մի թանգագին յիշատակ։ Գէորգ ստէպ ասում էր, թէ որդեսէր մօր զգայուն ընթերցանութեամբ շունչ առած այս նուիրական գրքի խրատներն ամենազօրեղ ազդեցութիւն էին ունեցել նրա ամբողջ կեանքի վրայ։ Այս գիրքը մինչև այս օրս էլ պահուած է Մօն-Վէրնօնի գրադարանում։

Վաշինգթօն նախկին փութով շարունակում էր իւր աշակերտական պարապմունքը. քաջալերական յորդորներ պէտք չէին նրան, այլ գուցէ զգուշարար խրատներ, որ նրա ուսանելու եռանդը չափազանցութեան չ'հասնէր։ Մտաւոր յառաջադիմութեան կենարար ոգին շատ վառ էր նրա մէջ։ Այժմ նա առևտրական հաշուեպահութիւն էր ուսանում Վիլլիամս վարժապետի մօտ։ Այս ճիւղի մէջ էլ, չը նայելով սրա չորութեանը, վերին աստիճանի արագ էր յա-

ռաջ գնում Գէորգ։ Ասես թէ նա մի յաղթական հերոս լինէր ուսման և գիտութեան ասպարէզի վրայ. Նրա զէնքերն էին խելք, կամք և յիշողութիւն, որոնք քանի՛ շատ գործածուին, այնքան առաւել սրանում և փայլում են։ Նա ատում էր անհոգ և ծոյլ աշակերտներին. այսպիսիներն անարգ էին երևում նրա աչքին։ Այս միջոցին նա կազմել էր «Գրաւոր շարադրութիւններ» անունով մի մեծ տետրակ, ուր գետեղում էր ամեն տեսակ պիտանի յօդուածներ — զանազան նկարագրերի, փոխանակագրերի, ընկալագրերի, վկայագրերի, վաւերացման, երաշխաւորութեան, պայմանադրութեան, վաճառման, վարձման, կապալի, ընկերակցութեան և կտակի օրինակներ—բոլորն էլ մաքուր գրուած և խոշոր տառերով։

Սկսեալ այն օրից, երբ որոշած էին անգլիական նաւատորմի նաւաստի անել Գէորգին, սա և՛ս առաւել ջան էր դնում կատարելագործուելու մարմնամարզութեան մէջ։ Գէորգի մայրենի տան մօտերքում դեռ մինչև այս օրս ցոյց են տալիս այն տեղն, ուստի նա մի քար էր նետած Թափահանօկ լայն գետի մի ափից մինչև միւսը։ Նա վարժ էր և ձի հեծնելու, և ինչ ամեհի նժոյգ էլ նստէր, քաջօրէն կը զսպէր։

Լօրէնց արդէն արել էր ինչ որ պէտք է եղ-

բօր մուտքը հաւատորմի մէջ դիւրացնե
մար։ Գէորգ վերջապէս ընդունուեցաւ և պա-
րաստվում էր ճանապարհ ընկնելու, երբ մայրը
դարձեալ մի անգամ կշռելով որդու գործը,
վճռեց, որ դեռ վաղ էր տարաշխարհ արձա-
կել նրան։ Մի կանացի թուլութիւն չէր, որ
թելադրեց նրան այս վճիռը. նա այնքան բա-
ներ էր լսած հաւաստիների կոպիտ և վայրագ
կենցաղավարութեան վրայ, որ բնաւ զարմա-
նալի չի պիտի թուի նրա յանկարծական հրա-
ժեշտն առաջին խորհրդից, որի կատարումն խս-
պառ հեռացնելու էր որդուն բարեգութ մօր
խրատիչ ձայնից և ազգականների հովանաւոր
աչքից։ Գէորգ առանց դժուարութեան հնազան-
դեցաւ սիրելի մօր կամքին և վերջերում շատ
շնորհակալ էր, որ մայրն այսպէս էր վճռած
իւր մասին։

Գէորգի կենսագրութիւնը շարունակելուց
առաջ, նրա մի սովորութիւնն էլ յիշենք այս
տեղ. նա ունէր մի օրագիր, որի մէջ համառօտ
արձանագրում էր իւր մտքերը զանազան խըն-
դիրների վրայ և այն իմաստալի գաղափար-
ներին, որ գտած էր գրքերի մէջ և կամ լսած
բանիբուն մարդիկներից։ Կը ցանկայինք, որ
մեր պատանի ընթերցողներն այս բանի մէջ էլ
Գէորգին հետևէին։ Նրա յիշատակարանի մի

*մասն կոչվում էր «Համարմսկութեան և զբօսանքի մէջ պահելու կանոններ», որոնցից մի քանիսն շատ կարևոր ճշմարտութիւններն են, միւսներն՝ ոչ այնքան կարևոր։ Սրանց մասին ճաշակ տալով, մենք նախ առաւել ճիշտ նկարագրած կ'լինէնք Գէորգի բնաւորութիւնն և երկրորդ—ցուցէ առիթ կ'տանք մեր ընթերցողներից մէկին կամ միւսին՝ մի քանի քաղուածք անելու Գէորգի շտեմարանից և, աւելցնենք իբրև մի բարի խորհուրդ,—հիմք դնելու իրենց առաջին աշակերտներին.*

*Աւասիկ նրա նկատողութիւնները.*

*Մարդիկների մէջ մտնելիս այնպէս բռնիր ինքդ քեզ, որ ոչ ոք քեզնից չ'վիրաւորուի։*

*Մի՛ երգիր ուրիշների առջև, ինքդ քեզ մռմռալով, և դղրդոց մի՛ հանիր ձեռքերով կամ ոտքերով։*

*Մի՛ քնիր, երբ ուրիշները խօսում են, մի՛ կանգնիր, երբ ուրիշները նստում են, մի՛ խօսիր, երբ հարկ է լռել, մի՛ շտապիր դէպի յառաջ, երբ ուրիշները կանգ են առնում։*

*Կանգնի՛ր քեզնից աւագին հանդիպելիս և ճանապարհ տուր նրան, մանաւանդ երբ նա մի դրան կամ նեղ անցքի մէջ պատահի։*

*Աստիճանաւոր և պաշտօնատար մարդիկներին ամեն տեղ վայել է բարձ և պատիւ.*

բայց եթէ նրանք երէտասարդ են, պէտք է որ ինքեանք մեծարանք շնորհեն այնպիսի անձերին, որոնք թէև պաշտօնատար չեն, սակայն պատուելի են ծագմամբ և ազնիւ բնաւորութեամբ։

Կարճ կտրիր խօսքդ, երբ զբաղուած և գործի տէր մարդիկներին դիմելու լինիս։

Հիւանդին այցելութիւն անելիս բժիշկի դեր մի խաղար, եթէ բան չ'գիտես։

Քեզնից շատ բան իմացողին քարոզ մի տար, եթէ ոչ արած յանդգնութիւն կ՚լինի։

Եթէ կամենաս մի յանդիմանութիւն կամ մի խորհուրդ տալ բարեկամիդ, նախ լաւ կըշռիր—արդեօք հրապարակա՞ւ պիտի անես այդ թէ ծածուկ, իսկ՞յն թէ յետոյ, և ի՞նչ խօսքերով. յանդիմանելիս բարկութեան նշան մի ցոյց տար, այլ խօսիր հեզութեամբ և քաղցրութեամբ։

Որտեղ էլ, երբ էլ քեզ մի նկատողութիւն անեն, շնորհակալութեամբ ընդունիր. իսկ եթէ դու անպարտ համարես քեզ, պատեհ ժամ և յարմար տեղ գտնելուդ պէս՝ յայտնիր այդ քեզ կշտամբողին։

Մի յանդիմանիր ընկերիդ մի որ և է բան, որի մէջ ինքդ էլ անպարտ չես. պատճառ օրինակը քարոզից ազդու է։

Զգուշացի՛ր որ մի վիրաւորիչ խօսք և հայհոյանք չըսպրդի շրթունքիցդ։

Բարեկամիդ անունն արատող շուտափոյթ լուրերին մի՛ հաւատար։

Թո՛ղ շորերդ պարզուկ լինին և մի՛ ջանար զարմացնել դրանցով. հագածդ թող չափով լինի և հանգիստ։

Ազնիւ մարդիկների հետ բարեկամացի՛ր, եթէ կամենում ես յարգել պատիւդ. որովհետև լաւ է բոլորովին մէնակ մնալ, քան թէ վատերի ընկերութեան մէջ մտնել։

Երբ երկու հոգի վիճելու լինին, առանց հրաւէրի մի՛ անցնիր մէկի կամ միւսի կողմը և մի՛ լինիր կամակոր։ Անտարբեր բաների մէջ մեծամասնութեան միացի՛ր։

Խաղի մէջ չարութիւն և նախանձ մի՛ ցոյց տալ, այլ մեղմ բարութիւն. իսկ եթէ դրդուիս, տես որ խելքդ լինի քեզ առաջնորդ։

Ուրիշների պակասութիւնը մի՛ կշտամբիր, պատճառ այդ անելը վայել է միայն ծնողներին, վարժապետներին, մեծերին։

Խօսելուց առաջ մտածի՛ր, ապա թէ խօսիր. բառերը շուտ շուտ մի՛ թափիր, այլ պարզ, որոշ և մեկին խօսիր։

Ընկերիդ խօսքին ուշադրութեամբ լսիր և թոյլ տուր, որ ուրիշներն էլ նրան լսեն. իսկ

եթէ նա խօսելիս շփոթուի և կամ շուարի, մի՛ օգնիր նրան, մինչև որ նա ինքն չ՚խնդրէ քեզ. խօսքը մի՛ ընդհատիր և միայն ասելիքն աւարտելուց յետոյ պատասխան տուր։

Մի՛ շտապիր պատմելու լաւ լուրերդ, եթէ չ՚գիտես, որ դրանք ստոյգ են։

Խօսելու ժամանակ զգոյշ խօսիր, ով էլ լինէր ունկնդիրդ—մի նշանաւոր թէ աննշան մարդ։

Երբ մեծաւորդ ուրիշի հետ խօսելիս լինի, դու լուռ կաց և մի՛ ծիծաղիր։

Ճատախօս մի՛ լինիր, խօսքի նիւթից մի՛ շեղուիր և մի և նոյն բանը հազար անգամ մի՛ կրկնիր։

Ինչ էլ պատահի սեղանի գլխին, մի՛ նեղանար, այլ զգայիր բարկութիւնդ և զուարթ կաց, մանաւանդ երբ հիւրեր լինին տանդ մէջ. որովհետև լաւ է ունենալ ուրախ և շէն սիրտ, քան թէ փարթամ ճաշ։

Երկիւղածութեամբ խօսիր Աստուծոյ հետ և նրա բնութեան վրայ. հնազանդ եղիր ծնողներիդ և պատուիր նրանց, ինչքան էլ աղքատ լինէին։

Զուարճութիւններդ թող արիական լինին, բայց անարատ։

Վառ պահիր սրտիդ մէջ այն երկնային փոքրիկ կայծը, որի անունն է խիղճ։

---

Բ

## ԵՐԿՐԱՉԱՓ

Գէորգ իւր մօր որոշմամբ անգլիական նաւատորմի ծառայութիւնից հրաժարուելով, շարունակում էր ուսումը Վիլլիամսի վարժարանում, ուր կամենում էր հիմնովին ծանօթանալ երկրաչափութեան արուեստին։ Այժմ նա մասնաւորապէս եռանկիւնաչափութիւն էր ուսանում և չափում էր դպրոցին պատկանած արտերն և սահմանակից դաշտերը, և այս բոլորն այնպիսի խնամքով, որ ասես թէ երդուածն տուած լինէր ճշտութեան մասին։ Նա ուշի ուշով թղթի էր անցնում ամեն բան, ինչպէս են նկարներ, հաշիւներ, ապացոյցներ, առանց մի որ և է աւելորդ բիծ կամ չաւելուած մրտըցնելու այս թղթերի մէջ, և եթէ մի սխալ էր գործէր, այնպէս ճարտար և մաքուր էր դուրս քերում, որ յետոյ մանրակրկիտ հետազօտութեամբ միայն կարելի էր նշմարել այս քերուածքը։ Անհերև է, որ ջանասիրութիւնն և խիստ ճշտութիւնը մի անհրաժեշտ կարիք և երկրորդ բնութիւն էր դարձել նրա համար— նա դրանով էր ապրում։

Նուազ չէր նրա փոյթն և կարգապահու-թեան մասին։ «Ոչինչ բան չէր գործում նա շտապով, վեր ի վերոյ և կիսատ», ասում է Իրվինգ. «և մինչև կեանքի վերջը հաւատարիմ էր մնում այս սովորութեան, և ինչքան էլ պրճնկուած լինէին գործերը, ինչքան էլ հսկող ու մաշող հոգսեր ունենար սաժանելի և վտան-գաւոր պաշտօնների մէջ,—միշտ ժամանակ էր գտնում աւարտելու ամեն բան և լաւ աւար-տելու. Նա գտած էր մէթօդի գաղտնիքն և հրաշք էր գործում սրանով»։

Գէորգի ուսումը գիտութեան միւս ճիւղերի մէջ թերի էր. վարժարանը լեզուի հասարակ կանոններն անգամ չէր տուած նրան. գէթ այս-պէս կարելի է եզրափակել նրա աշակերտական տետրերից, ուր քերականութեան սխալները հա-զուագիւտ չեն։ Սակայն այս պակասն էլ նա լրացրեց և երկայնամիտ աշխատութեամբ, ըն-տիր գրքերի ընթերցանութեամբ և համեմա-տութեամբ այն տեղ հասաւ, որ վերջապէս կա-րող էր ճիշտ և յստակ ոճով արտայայտել իւր մտքերն և մինչև անգամ մի սքանչելի վսե-մութիւն տալ լեզուին, որի մի քանի օրինակ-ները յետոյ առիթ կ'ունենանք տեսնելու։ Մի-այն լեզուագիտական հրահանգներով կարելի չէր հարկաւ այնքան պարզութիւն, ուղղութիւն

և զօրութիւն փայլեցնել լեզուի մէջ. այս բաների նկատմամբ նրա ոճն իւր բնութեան հայելին էր։

Գէորգ երջանիկ էր, որ ազգակցութեան կապերի շնորհիւ հնար ունէր մտնելու մի քանի կրթուած տների մէջ. արդէնասացինք, որ նրա եղբայրը յաջող ամուսնութեամբ մի լաւ ընտանիք հիմնելով, նիւթապէս ապահոված կեանք էր վարում Մօն-Վէրնօնի ազարակում։ Սրանից մի քանի մղոն հեռու գտնվում էր Վիլլիամ Ֆէրֆաքսի կալուածքը—Բէլվուար։ Այս մարդու կեանքն արկածներով լի էր. ծննդեամբ անգլիացի, կոչմամբ զինուորական, նա, մի քանի արշաւանքների մասնակցելուց յետոյ, անգլիական կառավարութեան կողմից կուսակալ և բարձրագոյն դատաւոր էր կարգուած Արևելեան Հնդկաստանի մի կղզու վրայ և այժմ բնակւում էր Վիրգինիայում, ուր որ տարիներէ ի վեր գահերէցի պաշտօն էր վարում արքունի խորհրդարանի մէջ։ Այս փորձառու և ժիր մարդու տունը, որ, աւելցնենք, մի առանձին կենդանութիւն էր ստանում նրա բարեկիրթ որդիների և աղջիկների ներկայութեամբ,—նոյնպէս բաց էր Գէորգի առջև։

Այս տան մէջ Գէորգ ծանօթացաւ մի շատ ինքնատիպ անձնաւորութեան հետ, որ էր մի

քաջատոհմիկ անգլիացի ազնուական և տանտիրոջ համանուն հօրեղբայր Վիլլիամ Ֆէրֆաքս լօրդը—գրեթէ վաթսունամեայ, հասակով վեց կանգուն, նիհար, ոսկորուտ, ջլուտ, գորշագոյն պարզ աչքերով, սուր գծագրուած դէմքով և արծուաքիթ մի մարդ։ Անգլիայի մէջ այս մարդն անուանի էր եղած թէ սուսերով և թէ գրչով։ Յետոյ յաջողակ ամուսնութեամբ լայնատարած հողեր էր ստացել Վիրգինիայի մէջ, և յատկապէս Ռափահանօկ և Պօթօմակ գետերի վրայ, որոնց սահմաններն մինչև Ալլէգանի լեռներն էին հասնում։ Այս ահագին կալուածների վարչութիւնը լօրդի հաճութեամբ յանձնուած էր առ ժամանակ Վիլլիամ Ֆէրֆաքսին։ Լօրդը դեռ նոր էր եկած Վիրգինիա իւր ընդարձակ և գրեթէ արքայական կալուածները տեսնելու համար։ Մի անտառախիտ վայրի աշխարհ, բայց ինչքա՜ն շքեղ և հարուստ։

Մի քանի խօսք Վիրգինիայի բնութեան վրայ։

Վիրգինիա՛ն, որ մեծութեամբ Ֆրանսիայի կէսի չափ է, երեք մասն է բաժանվում Ալլէգանի լեռներով. առաջինն է սարուտ մասը այն մեծահամբաւ ժայռի կամուրջով, որի բնական կամարի տակ 250 ոտք խոր վհի մէջ, ապառաժներից սեղմուած, յորդան է տալիս Կետրո-

նեան փրփրադէզ ջրվէժը. երկրորդն է աւազուտ և տեղ տեղ ճահճային մասն և վերջապէս երրորդն է՝ արևելեան բարեբեր և ալէձև մասն, որ հասնում է Օհիօ գետին:

Երկիրը շատ արգաւանդ է և անչափ արտեր և սիզաւէտ դաշտեր ունի խոտաճարակ խաշների համար: Վայրի որթերով և ոլորուն բոյսերով պատուած թաւ անտառների մէջ աճում են հացիք, ուռիք, կաղնիք, շագանակենիք, բարտիք, կակաչք, թմբիք, կնձնիք, մայրիք, ցախիք, սարոյք, մագնողինիք, նոճիք, կեռասենիք, սալորիք. վայրի գազաններն և թռչունները վխտում են պուրակների մէջ, իսկ գետերը լիքն են ձկներով:

Լօրդ Ֆէրֆաքս երևակայած անգամ չէր այսպիսի ճոխութիւն գտնել իւր ստացուածի մէջ. և ինչպէս հրապուրիչ էր թւում նրան այս կուսական հողերի մշակութեան համար պէտք եղած աշխատանքը. ինչպէս դատարկ էին երևում մեծ քաղաքների զբօսանքներն յանդիման այն պարզ ուրախութեան, որ վայելում է անտառների մէջ վաստակող բնութեան ժիր որդին: Նրա աչքերը չէին կարանում յագենալ դաշտերի վսեմ տեսարանից:

Երևի թէ Վաշօրքիանն էլ զմայլած էր նրա նման, երբ գրում էր հետևեալ խօսքերը.

«Որպիսի՜ գիւղական խառնուրդ ընկերային կենակցութեան և վայրենի կացութեան։ Այս փոքրիկ մայրիի ետևից, որ Հինաւուրց անտառի մի չքնաղ մնացորդն է, աւասիկ նշմարում եմ դեռ նոր սկսուած մշակութեան անդրանիկ դաշտեր. գետնատապալ կաղնիների միջով վէտ վէտ ծածանվում են ոսկեգոյն Հասկեր. արմատախիլ ծառերի տեղ դիզվում են լիուլի որաներ — միայն մի ամառուայ վաստակի նախընծայ խայրիք. պարարտ արտերի վրայով դէպի վեր են սլանում Հրկիզուած անտառներից ծխի սևաթոյր ամպեր. փլատակների միջով յամրաշարժ յառաջ է գնում մշակի խումբ. երկրաչափներն աստ և անդ սիւներով որոշում են սաՀմանները. վայրի թռչունները փախչում են բոյներից և գիշատիչ գազանների որջերն դառնում են մարդու անդորր բնակարան, և տապարի ամեն մի Հարուածը Հնչմամբ աւետում է, որ այս դաշտերի վրայ շուտով մի առատ օրՀնութիւն պիտի լինի երկնքից»։

Այսպէս ուրեմն այևոր և կորովի լօրդը վճռում է Հաստատուել իւր կալուածքի մէջ և էլ չ'վերադառնալ Անգլիա։—Առ այժմ նա բնակվում էր եղբօրորդու ագարակում—Բէլվուառ։

Պէտք է ասել, որ լօրդը ինչքան որ սի-

րում էր բուսական աշխարհն, այնքան էլ, գուցէ և՛ս առաւել, աղուէսի որս էր սիրում, և որովհետև Վիրգինիայի անտառներն դրեթէ լիքն էին այս խորամանկ կենդանու տեսակներով, ուստի ի՛նչ ասել կ՚ուզէ, որ լօրդն առաւել ևս պիտի սիրահարուէր իւր կալուածքին: Սակայն որսի ժամանակ մի ուղեկից ընկեր էր պէտք. ո՞ր տեղ գտնէր լօրդը մի այնպիսի ձիաւոր, որ գէթ փոքր ինչ հաւասար գար իւր նման դիմագրաւ և քաջ ասպետին, մանաւանդ այն բլրուտ և թփուտ վայրերում, ուր դեռ մարդու ոտք անգամ չէր կոխած:

Ընթերցողն ինքն էլ կ՚սոէ, որ Գէորգից յարմար որսընկեր կարող չէր գտնել առոյգ ծերունին. և իրաւ, աղուէս բռնելու ժամանակը հասնելուն պէս, լօրդն և Գէորգը սկսան ամեն առաւօտ ձիերով և շներով դաշտերի մէջ թափառել և հազիւ էր պատահում, որ առանց որսի տուն վերադառնային:

Լօրդը մինչև այժմ իւր լայնածաւալ հողերի միայն մի փոքրագոյն մասն էր տեսած և մտադիր էլ չէր, ներսերը թափանցելով, ամբողջ կալուածքը զննելու. բայց կ՚ուզէր, որ բոլոր տարածութիւնը գէթ մի անգամ չափուէր, պատճառ լսած էր, թէ գաղթականներից ոմանք յանիրաւի գրաւում էին դրա սահմանները:

Այժմ լօրդին հարկաւոր էր մի բանիբուն երկրաչափ և յատկապէս այնպիսի մի մարդ, որ հմտութիւն ունենալուց զատ, նմա և մի ազնիւ միտք և քաջ սիրտ ունենար։ Երբ լօրդ Ֆէրֆաքս և Լօրէնց Վաշինգթօն խորհուրդ էին տեսնում այս մասին, վերջինս սեղանի վրայ դրաւ իւր ազարակի ծրագիրները, հաշիւներն և պատկերները, որոնք դեռ նոր էին քաշուած Գէորգի ձեռքով։ Լօրդն այն աստիճանի գոհ մնաց երիտասարդի նկարներից, որ նոյն րոպէին վճռեց յանձնել Գէորգին և իւր հողերի չափումը։ Նա չէր երկբայում Գէորգի հաճութեան մասին. երիտասարդն էլ հասկանալով, որ ծերունու առաջարկութիւնն իւր մանուկ հասակին պատիւ բերող հաւատարմութեան մի նշան էր և իւր արհեստի մէջ մարզուելու մի պատեհ առիթ, յօժարութեամբ ընդունեց լօրդի հրաւէրը։ Աւելացնենք որ այս գործը, որ նա հենց դրա սիրուն պատրաստ էր յանձն առնել, նիւթապէս էլ շատ ձեռնտու էր, պատճառ նա մէն մի օրուայ աշխատանքի համար քառասուն ֆրանկ պիտի ստանար լօրդից։

Գէորգ տուն գնաց մօր հաւանութիւնը խնդրելու։ Իւրաքանչիւր յառաջադէմ պատանի դիւրաւ կ՚հասկանայ, թէ ինչ զգացմունք էին յուզվում նրա սրտի մէջ, երբ նա շտապում էր

լուր տանել մօրը իրեն վիճակուած պատուէր և ամենայն առմամբ շահաւէտ յանձնարարութեան մասին։

---

Գ

## ԵՐԵՔ ՏԱՐԻ ԱՆՏԱՌՆԵՐԻ ՄԷՋ

Վաշինգթօն յաղթանդամ էր և բարձրահասակ, բարքն էր խոհեմ. ուստի առաւել տարեց էր երևում, քան որ էր իսկապէս, և ոչ ոքի մտքովն չէր անցնում վարուել նրա հետ, իբրև մի տասնվեց տարեկան երիտասարդի հետ։ Նրա բնաւորութեան էական յատկանիշներն էին զգօնութիւն, վճռականութիւն, անկեղծութիւն և համեստութիւն։

Վաշինգթօն սկսաւ իւր երկրաչափական արշաւանքն 1748 թ., իրեն ուղեկից ունենալով Վիլլիամ Ֆէրֆաքսի երիտասարդ որդուն և մի խափշիկ սպասաւոր։ Երեքն էլ ձիաւոր էին։ Չափուելիք երկրին հասնելու համար պէտք էր անցնել Կապոյտ լեռների գեղեցիկ շղթայից, որ այն ժամանակ Վիրգինիայի արևմտեան սահմանն էր։ Սարերի վրայ սառոյցն և ձիւնը դեռ չէին հալուած, մինչդեռ հովիտները ժպտում

էին գարնային գոյնզգոյն ծաղիկներով. ճանապարհը մերթ կարկառների միջով էր անցնում, մերթ թաւուտների միջով։ Գլխաւոր արգելքը հալուող ձիւնից գոյացած լեռնային հեղեղներն էին։ Քաջ ձիաւորներն այս դժուարադնաց ճանապարհով քսանհինգ անգլիական մղոն կտրելուց յետոյ՝ հասան Վիրգինիայի ամենասիրուն հովիտը. այս տեղ հոսում է մի գետ, որ իւր գեղեցկութեան համար «Աստղերի դուստր» էր կոչվում հնդիկներից։

Գէորգի յիշատակարանը լիքն է այս երկրի վառվռուն նկարագիրներով. սակայն գործը սկըսելուն պէս նա բոլորովին ընդհատում է դրանց և այն օրից միանգամայն անձնատուր է լինում իւր բուն նպատակին։ Հազիւ էր պատահում, որ ուղևորները մի որ և է անտառաբնակ մարդու տնակ տեսնէին. ուստի նրանք գիշերները շատ անգամ ծառերի տակ էին անցնում, խարոյկի մօտ։ Նրանց սնունդն ըստ մեծի մասին վայրի հնդուհաւն էր, որ նրանք շամփուր զարկած խորովում էին կրակի վրայ։

Ձիաւորները զգուշանալով հնդիկների հանդիպումից, քաջ սպառազինուած էին։

Բնական է, որ հնդիկները թշնամական աչքով նայէին գաղթականների վրայ։ Նրանք երկիրն իրենց սեփականութիւն էին համարում,

իսկ սպիտակ եկերին—աւազակ: Անգլթութիւնն երկու կողմից էլ պակաս չէր և կարելի չէ ուրանալ, որ եւրոպացի եկերինն առաւել ևս դաժան էր: Սակայն գործը հանգիստ քննելիս կը տեսնենք, որ հնդիկներն անընդունակ էին մի որքան և է մարդավայել կենակցութիւն հաստատելու, վասնորոյ և ափսոս կ՚լինէր, եթէ այնպէս աճազին և բնական տուրքերով այնպէս օժտուած մի սքանչելի երկրի վրայ առ միշտ և միակ տէր մնար քաղաքակրթութեան թըշնամի մի ազգ, որ թուով էլ հազիւ էր հասնում մի հարիւր հազարի: Այս ազգը դրէթէ չէր բազմանում, մինչդեռ սպիտակ գաղթականների աճեցողութիւնը վերին աստիճանի առատ էր: Լսենք, թէ ինչպէս էր բացատրում այս տարբերութեան պատճառը փոքրիկ Կրիայ անունով մի հնդիկ իշխան.

«Չեմ հասկանում ձեր բանը, ով սպիտակներ», ասում էր նա. «ձեր այս տեղ գալուց ի վեր դեռ երկու սերունդ չէ անցել, բայց դուք արդէն մժղուկների նման ծածկել էք մեր երկիրը, մինչդեռ մենք բնիկներս, որ ով գիտէ թէ ինչքան ժամանակէ ի վեր ենք ապրում այս տեղ, այնպէս նօսր ենք ցանուած, ինչպէս և մեր եղջիւրներն, որոնց որսում ենք դաշտերի վրայ: Այս էլ կայ, որ դուք ավլիս չափ փոք-

րիկ Հողից անգամ աՀագին արդիւնք էք դուրս բերում և այս սեննակից գուցէ քսան անգամ լայն տեղից՝ ամբողջ տարուայ ապրուստ ճարում. սրա Համար դուք վերցնում էք փոքր ինչ դալարուտ Հող, բռում էք այն տեղ ձեր կովն և ստանում էք կաթն և միս։ Այն ինչ մենք կարմիրներս անվերջ սաՀմաններ պէտք ունինք, պատճառ մեր որսած եղջերուն, որ մեզ Հազիւ թէ երկու օրուայ սնունդ է տալիս, լայնատարած դաշտեր է ուզում օրինաւոր Հասակ առնելու Համար։ Եւ եթէ որսացինք երկու կամ երեք Հարիւր եղնիկ, առել է թէ ճարակեցինք կերանք այն բոլոր արօտներն և թուփերը, որով նրանք ապրում էին։ Սպիտակ մարդիկն տարածվում են տափի վրայ իբրև իւղ, իսկ մենք Հալվում ենք գարնան ձիւնի պէս, և եթէ շուտով մի ուրիշ ճանապարՀ չ'բռնենք, խսպառ պիտի կորչի կարմիրներիս սերունդը»։— Դժբախտաբար նրանք այդ ճանապարՀը չ'բռնեցին։

Գէորգ, որ մինչև այժմ Հնդիկներ չէր տեսած, մի օր Հանդիպեցաւ երեսուն ձիաւոր կազմող մի վաշտի, որի գլխաւորը դրօշակի տեղ մի սպանուած թշնամու մորթ էր տանում առջեւից։ Մեր ուղևորները վտանգի մէջ էին. վայրենի մարդիկը շատ Հեշտ կարող էին յարձա-

կուխլ նրանց վրայ, դուցէ յարձակուէին էլ, եթէ նրանք երկիւղի մի որ և է նշան ցոյց տային։ Բայց Գէորգ և սրա ընկերակիցներն իմանալով, որ այս տեսակ դէպքերում ամենից գլխաւորն արիութիւնն էր, ձիգ քարշեցին նժոյգների սանձն և համարձակ ընթացան հնդիկների հանդէպ։ Հնդիկներին առաջարկուած ողելից ըմպելին մի այնպիսի հաշտ զգացմունք ազդեց նրանց, որ այս պարգևի փոխարէն նրանք կամեցան մի պատերազմական պար պարել մեր ուղևորների համար։ Երեկոյ էր. հնդիկները կրակ վառեցին և սրա շուրջը նստեցան։ Առաջնորդը սկսաւ՝ նախ մեղմ ձայնով և շարժուածքով և ապա արագ արագ երգել իրենց վերջին քաջագործութիւնը։ Զինուորները նստած էին դլխիկոր — ասես թէ երազում լինէին քնի մէջ. երգի բորբոքիչ խօսքերը ներգործեցին, և նրանցից մին յանկարծ վեր ցատկելով, սկսաւ պարել միլեգնաբար։ Հետզհետէ ամենքն էլ ոգևորուեցան, զարհուրելի աղաղակով, կատաղի շարժմամբ խարոյկի շուրջը թռչկոտեցին և այսպիսով ցոյց տուին, թէ ինչ էր նրանց պարը։ Թմբուկի տեղ նրանք հարուածում էին եղնիկի կաշիով պատած, ջրով լեցուն մի կաթսայ, իսկ միւս երաժշտական գործին էր ձիու պոչով զարդարուած և մէջը գնդակներ ունեցող մի շի-

շաձև դգում, որ բախում էր գինուորներից մին։

Գէորգ մի ամառում աւարտեց արտերի չափումն և վերադարձաւ Մօն-Վէրնօն Հաշիւ տալու Ֆէրֆաքս լօրդին, որ շատ գոհ մնաց նրա աշխատանքից։

Երիտասարդ Վաշինգթօն լօրդի պատուէրն ուղիղ կատարելով, մի ճարտար երկրաչափի համբաւ ստացաւ. նա դեռ տասնեօթ տարեկան չէր, որ Վիրգինիայի վարչութիւնը պետական երկրաչափի պաշտօն տուաւ նրան և նրա որոշած սահմանները վաւերական հաստատեց։ Այնուհետև Գէորգ ամեն կողմերից հրաւէր էր ստանում երկիրները չափելու, և նա ամբողջ երեք տարի զբաղվում էր այս գործով։ Թէ որ աստիճանի ճիշտ էր վարում նա իւր պաշտօնը, երևում է այն իրողութիւնից, որ Վիրգինիայի բնակիչները դեռ մինչև այս օրս տարապայման հաւատ են ընծայում նրա անուամբ պաշտօնապէս արձանագրուած սահմաններին։

Երեք տարուայ մեծագոյն մասը Գէորգ անց կացրեց Վիրգինեան անտառների այն գեղեցիկ, բայց վայրենի մէնութեան մէջ։ Ի՜նչպէս տարբեր էր նրա կեանքը մեծ քաղաքներում ապրող թուլամորթ երիտասարդների վարած կեանքից. նրա մարմինն և հոգին զօրանում էին բնութեան գրգում. անտառների և

դաշտերի առանձնութեան մէջ նա ազատ էր հետևելու իւր սրտի ազնիւ բերմունքներին։ Պարապոյ միջոց գտնելուն պէս նա գնում էր մերթ եզբօր մօտ, մերթ նրա աների և կամ Ֆէրֆաքս լօրդի մօտ, և այս լուսաւորուած շրջանի ազդեցութեամբ էր, որ նա չէր մոռանում անտառների մէջ բարեկիրթ հասարակութեան վայելուչ ձևերը։

Բայց ինչ էական օգուտ ունեցաւ Գէորգ այս երեք ամեայ աշխատանքից։ Նախ այն օգուտն, որ ինքն իւր վրայ վստահութիւն ստացաւ և ժողովրդի հաւատարմութիւնն և յարգանքը վաստակեց։ Սրանք շօշափելի օգուտներն էին. բայց կար և մի ուրիշ արդիւնք, որ նա տակաւին չէր տեսնում, որ դեռ սքողուած էր նրա առջև։ Եւ ո՞վ կարող էր գուշակել, որ Վիրգինիան և միւս քոյր նահանգները շուտով զէնք վերցնելու հարկ պիտի ունենային իրենց սուրբ իրաւունքները պաշտպանելու համար։ Միթէ Վաշինգթօն կարո՞ղ էր այժմ երևակայել, որ սար ու ձոր ընկած աշխատելիս, նա չափում և ուսումնասիրում էր գալոց պատերազմների ասպարէզը, որին քաջ ծանօթ լինելն ամեն բանից աւելի անհրաժեշտ էր մի սպարապետի համար, և որ այս սպարապետը նա՛ ինքն պիտի լինէր։

---

Դ

## ՊԱՏԳԱՄԱԻՈՐ

Այն մարդը միայն արժանի է ապրելու, որ շարունակ մի բարի գործի է նուիրում իւր կեանքը. այսպէս չ'անողը չի էլ ապրում յատկապէս, գէթ մարդու նման չէ ապրում: Մարգավայել կեանք վարողն իւր քանքարը, իւր ոյժերը չէ թաղում գետնի մէջ, այլ խնամով մշակում է դրանց յօգուտ անձին և մարդկան, և այսպիսի աշխատութեամբ մի արժանաւոր կնիք է դրոշմում իւր կեանքին:

Գէորգ Վաշինգթօն այժմ տասնինն տարեկան էր և իւր արիական կորովով և հանճարով արդէն գրաւած էր հայրենակիցների յարգանքը, որ երևում է հետևեալ դէպքից:

Թշնամի հնդիկներն և ֆրանսիացիք իրենց յարատև ասպատակներով շատ նեղում էին Վիրգինիայի սահմանաբնակ ժողովրդին. այս պատճառով նահանգի վարչութիւնն որոշած էր աւանձին գնդեր կազմել զինակիր քաղաքացիներից և յանձնել ջոկ ջոկ գնդապետների, որոնց պարտաւորութիւնը պիտի լինէր՝ հրահանգել զինուորներին և պաշտպանել երկիրը թշնամու յարձակումներից:

Վարչութիւնը սահմանեց Վաշինգթօնին գնդապետ կարգել, մի բան, որ բոլորովին յարմար էր գալիս նրա ախորժներին։ Սակայն այս կարեւոր պաշտօնն ընդունելիս նա լաւ զգում էր, որ դեռ լիովին պատրաստուած չէր նոր կոչման համար, ուստի և ջան դրաւ առաւել հմտանալ պատերազմական արուեստին, որի մէջ այնքան հռչակուելու էր շուտով։ Նրան օգնում էին եղբայրն և միւս գնդապետները։

Բայց Վաշինգթօն այս նոր ասպարէզի վրայ ոտք դնելուց առաջ մի տխուր պարտք ունէր կատարելու իւր եղբօր վերաբերմամբ։ Լօրէնց հիւանդ էր և բժիշկները խորհուրդ տուին, որ նա Արեւմտեան Հնդկաստան գնար դարման գտնելու համար։ Հիւանդը կամեցաւ Գէորգին էլ իւր հետ տանել. սա հարկաւ չէր կարող մերժել սիրելի եղբօր խնդիրն և այսպէս 1751 թ. աշնան նրանք միասին նաւ նստելով Հընդկաստան գնացին և արդէն յաջորդ ամառուայ կէսին վերադարձան դէպի տուն—Գէորգ նոր հոգսերով վշտագնած, իսկ Լօրէնց՝ դէթ հայրենի տան մէջ մեռնելու միակ յուսով։ Եւ իրաւ տուն հասնելուն պէս նա փչեց իւր հոգին, ի դառն սուգ բոլոր բարեկամների, որոնք ճանաչում էին նրա ազնիւ բնաւորութիւնն և սիրտը։ Նա թողաւ մի այրի կին և մի փոքրիկ դուստր.

նրա գետինների մեծ մասը կսակի զօրութեամբ Գէորգ ժառանգեց, որ և կտակապահ էր նշանակուած. Մօն-Վէրնօնի ագարակը մնում էր աղջկան այն պայմանով, որ ի դէպս սրա անժառանգ մահուան այս ագարակն էլ Գէորգին հասնէր. իսկ այրի կնոջը իրաւունք էր տրվում կալուածների հասոյթը վայելելու։

Վաշինգթօն, ժառանգութեան գործերը կարգադրելուն պէս՝ պաշտօնի մէջ մտաւ։ Այս միջոցին անգլիական կուսակալը բոլոր Վիրգինիան չորս վիճակի էր բաժանած, որոնցից մէկը նա տուաւ Վաշինգթօնին, հրամայելով, որ սա փոյթ տանէ ռազմական յատկութիւններ մշակելու թէ՛ սպաների և թէ սոսկ զինուորների մէջ։

Անգլիացիք և Ֆրանսիացիք վաղուց արդէն մի վէճ ունէին իրար հետ Ալլէգանի լեռներից մինչև Օհիօ գետը տարածուող արգաւանդ երկրի պատճառով. առաջինների Դինդուիդդի կուսակալն անգլիական ստացուածք էր համարում այս երկիրն, իսկ Կանադայի ֆրանսիական կուսակալն — Ֆրանսիայի սեփականութիւն։ Երկու կողմերն էլ մրցում էին գրգռել իրար դէմ վիճելի սահմանների վրայ բնակած հնդիկներին, որոնք էլ կա՛մ մէկին էին օգնում կա՛մ միւսին։

Իւրաքանչիւր հակառակորդ իրաւունք էր

յալտնում հողերի վրայ, բայց թէ որն իրաւունքն էր առաւել այդպարացի — դիւրին չէր ասել. միայն թէ ոսոխները հաստատ վճռած էին տեղի չ'տալ միմեանց և եթէ հարկ լինէր, զէնքերին թողնել խնդրի վերջնական լուծումը։

Այս էր ուրեմն Դինդուիդդի կուսակալի ռազմական պատրաստութիւնների բուն պատճառը։ Անգլիական կառավարութիւնը հրամայած էր նրան երկու բերդ հաստատել Օհիօյի վրայ. բայց մինչ այս հրամանն բերող նաւը դեռ ծովի վրայ էր, ֆրանսիացիք արդէն գրաւել էին վիճելի երկրի մի մասը։ Կուսակալը հաշտութեան մի վերջին փորձ փորձելու և թշնամու զօրութիւնն և դիրքը իմանալու համար պէտք համարեց մի միջնորդ առաքել ֆրանսիական հրամանատարի մօտ։

Դինդուիդդիի կարծիքով ոչ ոք կարող չէր առաւել լաւ ի գլուխ հանել այս գործն, քան թէ Գէորգ Վաշինգթօն։ Սա մի դժուար գործ էր. ֆրանսիական կուսակալին հասնելու համար պէտք էր այնպիսի երկիրների միջով անցնել, որոնք կամ բոլորովին անբնակ էին և կամ կասկածելի հնդիկներից բնակուած... բնագնացութեան բուն խնդիրն էլ դիւրիններից չէր. այս տեղ էլ մի խոհեմ արիութիւն էր հարկա-

ւոր յաջող արդիւնք ձեռք բերելու համար։ Սակայն Վաշինգթօն յետ չ՚կանգնեց կուսակալի հրաւէրից և ճանապարհ ընկաւ 1753 թ. սառնաշունչ Նոյեմբերի ամսին, հետն առնելով իւր զինամարզութեան վարժապետից զատ մի թարգման և չորս սահմանաբնակ զինուոր։ Փոքրիկ կարաւանը շատ նեղութիւն ունէր քաշելու ձմեռային հողմերից և բուքերից, հեղեղներից և գետերից, որոնց վրայ դեռ ոչ մի կամուրջ չ՚կար։ Ճանապարհի վրայ նրանք հանդիպեցան անգլիացիներին հակամէտ մի հնդիկ ցեղի, որի գլխաւորը յայտնեց, թէ ֆրանսիացիք բնաւ իրաւունք չ՚ունէին երկիրը նուաճելու և թէ նա իւր միտքը նրանց կուսակալին անգամ հաղորդած էր մի ճառով։ Այս ճառը թղթի վրայ չէր գրուած հարկաւ, բայց և այնպէս հնդիկ իշխանը բառ առ բառ կարող էր կրկնել Վաշինգթօնին, որ և արձանագրեց դրան թարգմանի միջնորդութեամբ.

«Հայրիկներ», ասած է եղել հնդիկը ֆրանսիական կուսակալին. «դո՛ւք էք այս երկրի հանդստութեան վրդովիչները. դո՛ւք էք որ գալիս էք տուներ, քաղաքներ շինելու, մեր հողերը յափշտակելով։ Հայրիկներ, մենք արդէն վաղուց Մօն-Րէալի սահմանի վրայ կրակ վառելով խնդրած էինք ձեզ, որ կանգ առնէք

այն տեղ և դէպի ներս չ՚արշաւէք. այժմս էլ աղաչում եմ — յետ քաշուեցէք այն սահմանից։ Ասում եմ ձեզ, հայրիկներ, թէ մե՛րն է այս երկիրը, ոչ թէ ձերը. աղաչում եմ, հայրիկներ, մտիկ արէք ինձ քաղցրութեամբ—եթէ ոչ՝ մեզ կ՚մնայ մտրակով պատուհասել խռովիչներին։ Եթէ դուք հաշտ սիրով եկած լինէիք, ինչպէս որ եկան անգլիացիք, մենք ձե՛զ հետ էլ այնպէս առևտուր կ՚անէինք, ինչպէս որ անում ենք նրանց հետ։ Բայց դուք, հայրիկներ, այս տեղ գալով տուներ էք շինում ձեզ համար, երկիրը մեր ձեռքից խլում էք—չէ՛, այս բանին է՛լ չենք կարող համբերել։ Դուք էլ էք սպիտակ, հայրիկներ, անգլիացիք էլ սպիտակ են. իսկ մենք ապրում ենք նրանց և ձեր մէջ տեղը. ուրեմն այս երկիրն մե՛զ է պատկանում և ձեզնից ոչ մէկին։ Սա շնորհուած է մեզ մեծ Ոգուց, հետևաբար, հայրիկներ, խնդրում եմ որ յետ քաշուիք։ Այս խնդիրն ես յայտնած եմ և մեզ բարեկամ անգլիացիներին, պատճառ մենք ուզում ենք երկուքից էլ հեռու պահել մեզնից։ Արդ, այս աղաչանքը ձեր առջև էլ կրկնելով, կամենում եմ իմանալ, թէ երկուքիցդ ո՞վ արդեօք առաւել հաշտ է մեզ հետ. ո՛վ որ առաւել հաշտ լինի, մենք էլ նրան դաշնակից կը դառնանք ամեն բանի մէջ։ Անգլիացի եղ-

բայլերն արդէն լսել են խօսքերս. եկած եմ նոյնը ձեզ էլ յայտնելու, պատճառ բնաւ չեմ վախենում վռնտել ձեզ այս տեղից»:

Այսու ամենայնիւ իշխանն առաց Վաշինգթօնին, որ արդէն շատ հնդիկ տոհմեր ֆրանսիական կողմն էին անցած:

Մի քանի օրից յետոյ Վաշինգթօն շարունակեց այս տաժանելի ուղևորութիւնն և միայն եօթներորդ շաբթուն հասաւ ֆրանսիական կուսակալին, որ Օհիօ գաւառի հիւսիսային կողմն էր նստած: Կուսակալը պատուով ընդունեց նրան, բայց նրա առաքելութեան նպատակն իմանալուն պէս՝ բոլորովին հրաժարուեցաւ բանակցել վիճելի խնդրի վրայ, ասելով թէ բնաւ իրաւունք չ'ունէր ընդունած հրամանին հակառակ վարուելու: Վաշինգթօնին կ'մնար ուրեմն, և այս առաւել ուշ դարձնել իւր հրեշտակութեան երկրորդ կէտի վրայ, այսինքն դիտել թշնամու բանակն և բերդերի կազմութիւնը:

Այս բոլորի մասին ստոյգ տեղեկութիւններ հաւաքելուց յետոյ, Վաշինգթօն դարձաւ դէպի յետ. վերադարձը նոյնպէս լի էր ամեն տեսակ տառապանքներով: Ֆրանսիացիներին նիզակակից հնդիկները շատ անգամ որոգայթ էին լարում մեր ուղևորների դէմ. սրանց օթևանը շաբաթներով բաց երկինքն էր, անկողինը — սառ

ձիւնը։ Մի օր Վաշինգթօն քիչ մնաց որ խեղդուէր մի այէկոծ գետի մէջ։

«Գետից անցնելու մի ուրիշ հնար չ'կար, բայց թէ լաստի վրայ», գրում է նա. «առաւօտեան մենք սկսանք լաստի շինութիւնը միայն մի հատիկ տապարով, որ ունէինք, և ամբողջ օրուայ չարչարանքից յետոյ հազիւ վերջացրինք արևի մայր մտնելուն։ Այնուհետև դրինք նրան ջրի վրայ և ինքներս էլ վրան կանգնելով, ի բաց հրեցինք եզերքից։ Սակայն դեռ գետի կէսին չ'հասած, այնպէս սաստիկ խռուեցանք սառոյցների մէջ, որ ամեն մի րոպէ սպասում էինք, թէ ահա լաստը կ'ջարդուէր և մենք կը ընկղմէինք։ Ձեռքիս երկայն ձողը ջրի յատակի մէջ խրելով ես աշխատում էի բռնել լաստն և պաշտպանել նրան սառցի կտորներից. բայց կոհակներն յանկարծ այնպիսի ուժգնութեամբ հարուած տուին ձողիս, որ ես թաւալգլոր ջրի մէջ ընկայ։ Բարեբախտաբար ես նոյն վայրկենին բռնուեցայ լաստի գերանից և պրծայ։ Այնուհետև շատ տանջուեցանք, բայց ոչ այս ափին էինք կարանում հասնել, ոչ միւս ափին, և վերջապէս հրուեցանք մի կղզու վրայ, ուր և հազիւ փրկութիւն գտանք. իսկ լաստը թողինք որ յառաջ մղուի ալիքներից»։

Այնքան չարքաշութիւնից յետոյ մութ գի-

շեր ամայի կղզու վրայ, ոչ էլ գէթ առաւօտեան ազատուելու յոյս: Սակայն պատահեցաւ, ինչ որ բնաւ անսպասելի էր. սառոյցներն այնպէս դիզուեցան կղզու մի կողմը, որ կամուրջի նման մի բան կազմեցին, և Վաշինգթօն ընկերների հետ յաջողակ միւս ափն անցաւ:

Նա հասաւ տուն 1754 թ. կէսին և հէնց միւս օրն գնաց հաշիւ տալ կուսակալին:

---

Ե

## ՎԱՇԻՆԳԹՕՆԻ ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

Կուսակալը պարզ տեսնելով, որ ֆրանսիացիք մտադիր էին զէնք վերցնել իրենց պահանջները պաշտպանելու համար, վճռեց իսկոյն պատերազմ սկսել. եթէ նա յապաղէր, թշնամին ժամանակ կ'շահէր:

Բայց պատերազմը չ'սկսած, նա մի ժողով կազմեց Վիրգինիա նահանգի պատգամաւորներից և խնդրեց, որ նրանք էլ իւր նախագիծն ընդունեն: Սակայն այս հրաւէրը սկզբում շատ դուր չ'եկաւ պատգամաւորներին: Նրանք ասում էին. «Անգլիային, մեր մայր երկրի, իրաւունք-

ներն Օհիօյի վրայ արդարև կասկածելի են. բայց եթէ Անգլիայի թագաւորն անպատճառ ուզում է իւր որոշման վրայ պնդել, թող ուրեմն ինքն էլ զօրք ուղարկէ Անգլիայից»: Այսու հանդերձ պատգամաւորները զիջան գէթ տասն հազար ստէրլինգ տալ կամաւոր զինուորներ վարձելու համար:

Վաշինգթօն այնքան հանճար էր ցոյց տուել իրեն յանձնուած դժուար գործերի մէջ, որ կուսակալն կատարեալ վստահութեամբ նրան առաջարկեց նորակազմ բանակի հրամանատարութիւնը: Վաշինգթօն հրաժարուեցաւ այս պատուից, ասելով, թէ «պատասխանատուութիւնը անչափ ծանր էր գալիս իւր երիտասարդ հասակին»: Այնուհետև կուսակալը դիմեց Ջօնսօն Ֆրայ անգլիացի քաջ հազարապետին, որ և ընդունեց հրամանատարի պաշտօնը, տեղակալ կարգելով Վաշինգթօնին:

Արշաւանքը սկսաւ: Յառաջընթաց զօրականների զօրապետն էր Վաշինգթօն, որ միայն երեք վաշտ ունէր: Օհիօյի սահմանին հասնելուն պէս նա այս երեք վաշտերով յարձակուեցաւ մի ամբողջ Ֆրանսիական գնդի վրայ, որ եկած էր նրան պաշարելու. կռուի դաշտից միայն մի Ֆրանսիացի կարացաւ խոյս տալ. միւսները կամ ջարդուեցան կամ գերի ընկան: Այս առա-

ջին ընդհարման ժամանակ Ֆրանսիացիների դէմ էին և մի քանի հնդիկ ցեղեր։

Թէ որ աստիճանի էր յուզուած Վաշինգ-թօնի պատերազմական աշխոյժը, երևում է մի քանի օր յետոյ կուսակալին գրած թղթից. «Կարող էք լիովին վստահ լինել, վսեմափայլ տէր, որ ես երբէք թոյլ չեմ տալ թշնամուն յանկարծակի բռնել ինձ, երբ էլ դար. գլխաւոր խոստմունքս այս է. իսկ սրանից առաւել գոր-ծելու համար ի հարկէ չիպիտի խնայեմ իմ ջանքը։ Եթէ լսէք, որ պարտուեցայ, հաւաստի եմ, որ նոյն ժամանակն էլ պիտի լսէք, թէ մենք մեր պարտքը կատարելով, մինչև յուսոյ յետին ստուերը ոգորեցանք»։

Ֆրայ յանկարծ մեռնում է այդ միջոցին և կուսակալը դարձեալ Վաշինգթօնին է առա-ջարկում հրամանատարի պաշտօնը։ Այս անգամ սա, նոր յաջողութեամբ ոգևորուած, դէմ չէ դնում կուսակալի կամքին և ամեն արգելքներ տապալելով յառաջ է մղում արշաւանքը։ Նրան միանում են շատ հնդիկ տոհմեր, որոնք պա-տերազմի մէջ անգուգական զինուորներ էին և ճարպիկ լրտեսներ։

Բայց օգնութիւն խնդրող վայրենիների մէջ պակաս չէին և այնպիսի մարդիկ, որոնք, ինչ-

պէս որ վերջը յայտնի եղաւ, Ֆրանսիացւոց համար էին լրտեսութիւն անում։

Ճանապարհն այժմ անցնում էր մի սարոտ երկրից․ սակաւաթիւ երիվարներն ուժից ընկնելով էլ բանի պէտք չէին գալիս և հակերն ու թնդանօթները մարդիկ էին յառաջ տանում։ Զօրապետը բանիւ և գործով խրախոյս էր ազդում բանակին և հետի էր գնում զօրքի առջևից, թողնելով որ իւր ձին պարէն կրէր։

Շատ օրեր անցնելուց յետոյ՝ զօրքը վերջապէս հասաւ մի պատսպարուած տեղ․ զինուորները վերին աստիճանի յոգնած էին, եղանակը շարունակ անձրևային էր, ուտելու պաշարը բոլորովին նուազած։ Այս պատճառով Վաշինգթօն կամեցաւ հանգիստ առնել պատնէշների մէջ և սպասել, մինչև որ նոր պարէն ստանար։ Ահա այս միջոցին էր, որ Ֆրանսիացիք վրայ հասնելով, սկսան հուր տեղալ մօտակայ անտառից։ Վաշինգթօն, ճակատելու պատրաստ, խկոյն դաշտ հանեց իւր զօրքը․ սակայն Ֆրանսիացիք չէին դուրս գալիս ապահով անտառից, թէև գերազանց էին թւով, և ակնիրև կամենում էին դէպի անտառը հրապուրել թշնամուն։ Վաշինգթօն այնքան միամիտ չէր որ խաբուէր․ նա վերստին պատնէշների մէջ մտաւ և պատուիրեց զինուորներին այն ժամանակ միայն

հրացան պարպել, երբ կարելի լինէր անվրէպ դիպչել նպատակին, պատճառ վառօդը սպառուելու վրայ էր։ Ֆրանսիացիք, հնդիկ ցեղերի հետ միասին մի ծառախիտ բլրի վրայ կանգնած, ամբողջ օր շարունակեցին սաստիկ կրակ թափել վերևից. անձրևը չէր դադարում, փոսերը լցուել էին ջրով, վերջապէս թրջուած հրացաններն էլ չէին բանում այլ ևս։ Երեկոյեան ֆրանսիացիք իմաց տուին, թէ բանակցել էին ուզում։ Վաշինգթօն մերժեց նրանց խնդիրը, կարծելով թէ թշնամու միտքը իւր բանակը լրտեսելն էր։ Բայց փոքր ինչ յետոյ ֆրանսիացի բանագնացները նորից եկան ասելու, թէ բնաւ չէին կամենում բանակի մէջ մտնել, այլ թէ խնդրում էին, որ մի սպայ առաքուէր իրենց մօտ, և խօսք էին տալիս, որ դրա անձն ապահով կ՚լինէր։ Վաշինգթօն զիջաւ և բանակցութեան հետևանքն այս եղաւ, որ նա զինուորական պատուով հեռացաւ պատնէշներից։ Նա իւր հաստատամիտ արիութեամբ և տոկուն դիմադրութեամբ թաքցրեց թշնամուց իւր խական վիճակն, որ իրաւ շատ վատ էր, պատճառ ռազմական մթերքը դեռ հեռու էին և զօրքի համբարն իսպառ հատած։ Եթէ ֆրանսիացիք ստոյգ իմացած լինէին Վաշինգթօնի արդարև նեղ դրութիւնն և պատնէշների ողորմ

կացութիւնն, որոնց անկարելի էր պաշտպանել, տարակոյս չ'կայ, որ երբէք չէին յօժարուիլ այնպիսի պայման դնելու, և Վաշինգթօն, քիչ թէ շատ ընդդիմանալուց յետոյ, գուցէ ամբողջ բանակով կոտորեան կ'մատնուէր։ Հետևեալ օրն նա զինուորական պատուով դուրս ելաւ պատնէշներից, ուր յետոյ ֆրանսիացիք նեյս մտան։ Վաշինգթօն արաւ ինչ որ միայն կարելի էր անել այն դրութեան մէջ, վաստրոյ և սրտագին շնորհակալութիւն ընդունեց քաղաքային խորհրդից և կուսակալից։

Վաշինգթօն դեռ արշաւանքի ժամանակ անդադար մաքառում էր մի անիրաւ օրէնքի դէմ, որի զօրութեամբ քաղաքային զինուորներն սաւաել պակաս թոշակ էին ստանում, քան թէ անգլիական գնդերը։ Սա մի յայտնի վիրաւորանք էր վիրգինեան զինուորների համար, որոնք սակայն միշտ քաջ էին հանդիսացած կռիւների մէջ։ Վաշինգթօն հարկ համարեց նորից բողոքել սյս անարդարութեան դէմ. բայց որովհետև նրա պահանջները չ'ընդունուեցան և նա մի քանի ուրիշ խնդիրների նկատմամբ էլ համաձայն էր կուսակալի հետ, այս պատճառով նա հրաժարական տուաւ պաշտօնից։

Նրա հանգիստը երկար չ'տևեց։ Մի տարի անցնելուց յետոյ երկու լաւ կրթուած անգլիա-

կան գնդեր եկան Վիրգինիա Բրադդօկ զօրավարի առաջնորդութեամբ, և Վաշինգթօն, կառավարութեան հրաւէրին տեղի տալով, նորից բանակ մտաւ։ Այս առթիւ նա գրում էր ընկերներից մէկին. «Թող չ՚զարմանան, որ ես դարձեալ բանակ եմ մտնում. իմ արած քայլիս միակ շարժառիթը հայրենիքիս ծառայելու փափաքն է, ոչ թէ պատուասիրութիւնն և կամ շահուց ակնկալութիւնը։ Խօսքերիս վկայ թող լինի այս հանգամանքը, որ ես գնում եմ իբրև մի յօժարակամ զինուոր, առանց թոշակի և առանց յուսոյ մի որ և է բարձր դիրք ստանալու Բրադդօկից, որ, ինչպէս լաւ գիտեմ, ազատ էլ չէ տալու ինձ մի այնպիսի պաշտօն, որ ես յօժար լինէի ընդունել»։

Բրադդօկ իսկոյն խաղաց դէպի Օհիօյի գաւառը։ Այս արշաւանքը թերևս յաջող ելք կ՚ունենար, եթէ զօրավարը գէթ փոքր ինչ հակամէտ լինէր բարի խորհուրդ լսելու։ Նա վստահութեամբ յառաջ էր գնում, փող և թմբուկ հարկանելով,—ասես թէ շտապում էր հասնել մի տօնական հանդէսի։ Նա երկչոտութեան նշան էր համարում առաջուց դիտակներ արձակել, մինչդեռ անհաշտ հնդիկներն, նրա չորս կողմը շրջելով, միշտ հաւատարի լուրեր էին հաղորդում թշնամուն նրա ամեն մի քայլի մա-

սին։ Այս էր պատճառը, որ անգլիացիք յունիսի 9-ին մի գարանի մէջ ընկան, որ դրել էին հնդիկներն և ֆրանսիացիք. նրանց զարհուրելի կրակին խսկոյն զոհ գնաց յառաջապահ գնդի մեծ մասն, քսանվեց սպաներով հանդերձ, և նոյն իսկ Բրադդօկ զօրավարը։ Մի հրաշք էր, որ այս ջարդի մէջ Վաշինգթօն կենդանի մնաց։ Քանի որ Բրադդօկ դեռ կենդանի էր, Վաշինգթօն նրա հրամանով մի թևից դէպի միւսն էր սլանում. իսկ հրամանատարի ընկնելուց յետոյ հենց այն տեղերը նետվում, ուր որ առաւել սաստիկ էր պատերազմի արհաւիրքը։ Թշնամիները նրան որոնում էին, վասն զի սպանել էին ուզում այն մարդուն, որ թէ ձայնով, թէ օրինակով այնպիսի խրախոյս էր տալիս իւր զօրքին։ Հնդիկներից շատերը շեշտակի նրա դէմ հրացան պարպելուց յետոյ, տեսնելով որ նա միշտ մնում էր անվնաս, այն կարծիքի եկան, թէ նա մեծ Ոգու հովանաւորութեան տակ էր, և վերջապէս ձեռք վերցրին նրանից։ Մի հնդիկ իշխան յետոյ ինքն էր պատմում այս բանը. իսկ Վաշինգթօն գրում էր մի բարեկամի. «Ամենազօրն Աստուած այնպէս հովանի էր ինձ, որ մարդկային ամեն հաշիւների ներհակ՝ ինձ ոչ մի վնաս չ'հասաւ. իմ շորերի միջից չորս գնդակ անցաւ, տակս երկու ձիոյդ սպանուե-

ցաւ, բայց և այնպէս միանգամայն անվնաս պրծայ վտանգից, մինչդեռ ընկերներս մահու ճարակ էին լինում իմ կողքին»։

Վաշինգթօնի անվկանդ քաջութեան շնորհիւն էր, որ գէթ զօրքի մի մասը կոտորից ազատուեցաւ։ Ամբողջ երկրի մէջ միաձայն գովեստ էր հնչում նրա կորովի նկատմամբ և մի քահանայ այսպէս էր խօսում ամպիոնի վրայից. «Այս ճակատամարտի մէջ ախոյեան հանդիսացող քաջերից պիտի անուանեմ և մի հսկայաձոր երիտասարդ, Վաշինգթօն գնդապետին, համոզուած լինելով, որ եթէ երկինք փրկեցին նրան այնպէս հրաշաբար, ուրեմն նա դեռ շատ բարիք պիտի հասցնէ իւր երկրին»։

Վաշինգթօն այնուհետև գնաց Մօն-Վէրնօն դաստակերտը, որն որ եղբօր աղջկայ մահուան պատճառով իւր սեփականութիւնն էր դարձել։ Բայց նա դեռ պահպանում էր գնդապետի կոչումն և ամեն կերպ աշխատում էր բարեկարգութիւն մտցնել իւր իշխանութեան ենթակայ զօրքի մէջ։ Քաղաքացիները Բրադդօկի աղէտալի պարտութիւնից յետոյ վերջապէս հասկացել էին, որ պէտք չէր այլ ևս ոչ դրամ, ոչ էլ մարդ խնայել սպառնացող թշնամուն դէմ դնելու համար, և միաբան ցանկանում էին Վաշինգթօնին տեսնել իբրև հրամանատար։

Ընթերցողն արդէն գիտէ, որ նրա մայրն այն թուլասիրտներից չէր, որոնք ամեն մի վտանգից սարսափելով, արխութեան նշոյլն անգամ անհետայնում են զաւակների սրտից. սակայն վերջին ճակատամարտի ժամանակ որդուն սպառնացող մահն այնպէս էր տագնապել նրան, որ նա այժմ լալով աղերսում էր որդուն՝ հրաժարուել առ միշտ զինուորական ասպարէզից:

Վաշինգթօն սփոփում էր նրան գորովալից խօսքերով և ասում էր. «Եթէ պաշտօն վարելու պարտքն ընդհանուր հաւանութեամբ վրաս դրուի և կառավարութեան կողմից էլ ընդունելի պայմաններով ինձ առաջարկուի, այն ժամանակ ամօթ կ՚լինի ինձ մերժել դրան, և եթէ մերժեմ, դու առաւել թախիծ կ՚զգաս, քան թէ երբ ընդունեմ և պատուաւոր պաշտօնով դաշտ դուրս գամ»:

Այսու ամենայնիւ նա չէր կամենում առանց որոշ պայմանների ընդունել հրամանատարութեան պէս մի ծանր պաշտօն. նա նպատակն և միջոցները քաջ կշռելով պահանջում էր, որ հրամանատարը ձայն ունենար դնդապետների ընտրութեան մէջ, որ պարէնի հայթհայթման եղանակն իւր առաջարկած նախագծին յարմար կատարուէր և վերջապէս զօրքի թոշակն էլ ճիշտ և լրիւ վճարուէր:

Այս պայմաններն ընդունուեցան և դրանց օգուտն խկոյն առուգուեցաւ հետևեալ պատերազմին։ Փոքր ինչ յետոյ նա ընդունել տուաւ քաղաքային ժողովում և մի ուրիշ օրէնք, որով զինուորական դատարաններն իրաւունք պիտի ստանային պատժելու որևիցէ և դասալիք զինուորներին, ինչպէս և այն անպիտաններին, որոնք արատում էին բանակի պատիւը թուղթ խաղալով, գինեմոլութեամբ և լկտի բարքով։ Եւ Վաշինգթօն ոչ թէ միայն սահմանել տուաւ այդ կարգերն, այլ և ամենայն խստութեամբ գործադրեց։

Նրա գլխաւոր նպատակն էր այժմ դուրս վանել ֆրանսիացիներին Օհիօյի մէջ գտնուած Դիւքէն բերդից, որին և հասաւ յաջողութեամբ։ Այսպիսով միանգամայն վերջ դրուեցաւ նրանց տիրապետութեանն Օհիօ նահանգի վրայ և ի կատար եկաւ Վաշինգթօնի ամենադժուար գործերից մին, որի վրայ ճիգ էր թափած այնքան տարիներ—ուզում ենք ասել, որ թշնամի հընդիկներն առ միշտ հաշտուեցան նրա հետ։ Վաշինգթօն այս փառաւոր արդիւնքը ձեռք բերելուց յետոյ թողաւ հրամանատարի պաշտօնն և հեռացաւ ապրելու իւր մօր մօտ։

---

Զ

## ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՏԱՐԻՆԵՐ

Վաշինգթօն քսանեօթն տարեկան էր, երբ առանձնացաւ Մօն-Վէրնօնի մէջ։ Այս տեղ նա բախտ ունեցաւ ծանօթանալ մտքով և սրտով իրեն հաւասար մի նորատի այրի կնոջ հետ, որ մի վեցամեայ որդեկի և մի չորսամեայ աղջկայ մայր էր. սրա անունն էր Մարթա Կուստիս։ Վաշինգթօնի հարստութիւնն, որ արդէն էն էլ թէ չէ բաւական մեծ էր, և՛ս աւելի աճեցաւ կնոջ բերած 400,000 ֆրանկ օժտով։ Դժբախտաբար նրա ամուսնութիւնն ամուլ մնաց. սակայն իւր խորթ զաւակներին նա հարազատ հօր պէս սիրում էր։ «Յուսով եմ», գրում էր նա պսակից յետոյ, «որ ընտանեկան կեանքիս մէջ ես աւելի երջանկութիւն կ՚գտնեմ, քան թէ բազմահոյ մեծ աշխարհում»։ Այժմ նա զբաղուած էր իւր կեանքին մի նոր ուղղութիւն տալու մտքով։ Նա կամենում էր նախ և առաջ երկրագործութեամբ և այգեպանութեամբ պարապել. սակայն այնպէս, որ գիտութիւնների և արուեստների աղբիւրն էլ փակ չ՚մնար իւր համար։ Բայց տեսնում ենք, որ նա պսակուելու օրից հազիւ մի քանի ամիս անցած, վերստին

մտնում է հասարակային գործերի մէջ և յատկապէս Վիլլիամսբուրգ, ուր որ նահանգների պատգամաւորները մի ժողով էին կազմել նոյն միջոցին։ Նա բնաւ չէր հետամտած երեսփոխանական պաշտօնի, չէր էլ միաբանած առաջուց ընտրողների հետ, ինչպէս որ սովոր էին անել միւս ընտրելիներն. իւր անպայման հաւատարմութեամբ էր, որ նա այս պաշտօնի կոչուեցաւ։ Նա չէր թողնիլ հարկաւ իւր գեղեցիկ դաստակերտը, եթէ միայն իւր անձնական վայելքն ի նկատի ունենար. սակայն իբրև մի հայրենասէր մարդ, նա չէր կարող ընտրութիւն անել հայրենասիրութեան պարտքի և անձնական վայելքների մէջ։ «Այն մարդն միայն ընդունակ է լոկ անձնական վայելքներին հետեւիլ», ասում է մի բանաստեղծ, «որն որ ինքնասիրաբար միայն իւր համար է ապրում աշխարհիս վրայ. իսկ ով որ կամենում է ուրիշներին էլ օգտակար լինել, նա պարտական է երբեմն մոռանալ իւր անձը»։

Վաշինգթօնի ընտանիքն նրանով միայն պիտի մխիթարուէր, որ ժողովի նստաշրջանը մի քանի ամսից առաւել չէր տեւում տարուայ մէջ։

Երբ ժողովին յայտնի եղաւ Վաշինգթօնի ընտրուիլը, իսկոյն որոշեցին մի առանձին պա-

տալով ողջունել նրան խորհրդարանի մէջ: Վիրթ հենւեայն է գրում այս մասին. «Պարոն Թոբինզօն ատենաբանն պատուէր ստացաւ բոլոր գաղթականների անունամբ շնորհակալութիւն յայտնել Վաշինգթօն գնդապետին այն ազնիւ ծառայութիւնների համար, որ նա մատուցած էր երկրին նորաւարտ պատերազմի ժամանակ: Հենց որ Վաշինգթօն նստաւ աթոռի վրայ, Թոբինզօն խորին ակնածութեամբ կատարեց իւր պարտքը. սակայն սրտի ուժգին յուզմունքով և վառվռան լեզուովն այն աստիճանի շփոթեց երիտասարդ հերոսին, որ սա սաստիկ դողից ոչ մի բառ չ'կարացաւ արտասանել, երբ վեր կացաւ մի շնորհակալութիւն յայտնելու իրեն վիճակուած պատուի փոխարէն: Այս ճգնաժամին ատենախօսը, օգնութեան հասնելով տագնապած մարդուն,—«Նստեցէք», ասաց հանգուցիչ ժպտով. «Ձեր հեզութիւնն նոյնքան մեծ է, ինչքան և քաջութիւնը, և սա շատ վեր է այն գովասանքից, որ կարող էի բացատրել բառերով»:

Մի անսովոր երևոյթ չէ այս, որ իսկապէս նշանաւոր մարդիկ մեծ դժուարութիւն են կրում բազմութեան հետ դէմ առ դէմ խօսելու առաջին փորձի ժամանակ: Նրանք ակնածում են այն բազմաթիւ ունկնդիրներից, որոնց որ տես-

նում են իրենց առջև, շատ չեն փոտահում իրենց յատուկ ձիրքերին, ուստի և վարանում են առջի քերան. մինչդեռ իրենց սեփական տաղանդի վրայ մեծ կարծիք ունեցող և ունկնդիրների մտային ուժերը շատ ստոր հնահատող անձինք գիւրութեամբ են յառաջ մատչում խօսելու։ Այս բնաւորութիւններին յատուկ տատամսութիւնը միայն ժամանակով է անհետանում։ Այսպէս եղաւ և Վաշինգթօնի հետ. սակայն մի չքեղ պերճախօսութեան նա երբէք չ'հասաւ և սոոյն սասծ—իւր կեանքում մի ճառ անգամ չ'արտասանեց բառիս բուն նշանակութեամբ։ Այսս հանդերձ անչափ նշանաւոր էր նրա երեսփոխանական գործունէութիւնը։ Նա նոյն խիկ փութով էր մշակում ժողովին մատուցանելի առաջարկներին, ինչ փութով որ սովոր էր վարուիլ և իւր ամեն գործերի մէջ. նա անդուլ աշխատում էր ընդլայնել իւր մտքի հորիզոնը, և որովհետև նրա դատողութիւնը շատ սուր էր, այս պատճառով և նրա բացատրութիւնները, որոնք ըստ մեծի մասին հակիրճ էին, ամեն ժամանակ խորին ուշադրութեամբ էին լսվում ժողովից և միշտ ծանր չափով ընկնում կշռի վրայ։ Ոճը պարզ էր, որովհետև արժէք չէր տալիս արտաքին երևոյթին, այլ բուն գործովն էր հետաքրքրվում. այս էր պատճառը,

որ երբեմն հերիք էր նրա մի փոքրիկ, բայց գործնական դիտողութիւնը, որպէս զի բոլոր ատենաբանութիւնները իսպառ մի ուրիշ ընթացք առնէին։ Ամենքը լռում էին, երբ նա վեր կենար խօսելու. պատգամաւորները միշտ կամենում էին իմանալ, թէ արդեօք նա՛ ինչ կ'ասէր այս կամ այն խնդրի նկատմամբ։ Գործունէութեան այս ասպարէզի վրայ էլ հայրենեաց օգնելու ջերմ տենչն էր նրա գերագոյն առաջնորդը. և այս փափագն ծագում էր նրա իսկական բնութեան միջից, որ թեթևութեան մի նշոյլ անգամ չ'ունէր իւր վրայ։ Երբէք չէր պատահում, որ նա ուշանար նիստերին և կամ հեռանար դրանց աւարտելուց առաջ. այս բաների մէջ էլ նա իւր պարտքերին քաջ գիտակ և միանգամայն ազնիւ մարդու տիպար էր հանդիսանում ամենքի համար։ Այսու ամենայնիւ ինչպէս գիտէր մանկօրէն ուրախ և զուարթ լինել իւր ընտանեկան շրջանի մէջ։

Յիշատակի արժանի են Վաշինգթօնի հետևեալ խօսքերը, որ նա ասել էր մի բարեկամի, երբ սա կամենում էր պաշտօն ընդունել քաղաքային խորհրդարանի մէջ. «Եթէ կամենում ես գրաւել ունկնդիրներիդ ուշադրութիւնը, միայն այս խորհուրդը կ'տամ քեզ—քիչ խօսիր և միայն կարևոր նիւթերի վրայ խօսիր. այն էլ՝

դրանց հետ լաւ ծանօթանալուց յետոյ։ Երբէք թոյլ մի՛ տալ քեզ յափշտակուելու. անպատեհ եռանդով և շատ մեծ հաւատ մի՛ ընծայիլ անձնական դատողութեանդ։ Խօսելու հրամայական եղանակը թէև կարող է երբեմն հաւանութիւն կորզել ունկնդիրներից, բայց չէ կարող համոզել նրանց և գուր գալ նրանց սրտին»։

Տարուայ մեծագոյն մասը Վաշինգթօն ազատ էր հետևել իւր ներքին բերմունքներին, որոնք, ինչպէս արդէն տեսանք, դէպի գիւղական կեանքն էին միտում։ Եւ նրան հրապուրող Մօն-Վէրնօնն արդարև մի սքանչելի դիրք ունէր։ Վաշինգթօն Իրվինգի նկարագրութեամբ «Բնակութեան տունը նստած էր մի անտառապատ բլրի վրայ և իշխում էր Պօտօմակ գետի ստորին և վերին ընթացքի հոյակապ տեսարանների վրայ։ Տունն անմիջապէս շրջապատող պարտէզները գրեթէ անգլիական ճաշակով էին տնկուած։ Դաշտերն ունէին այլ և այլ արտեր, իւրաքանչիւրը ջոկ մշակութեամբ, որ հոգացվում էր առանձին մշակների ձեռքով։ Սակայն երկրի մեծագոյն մասը տակաւին ծածկուած էր անտառներով և կտրտուած խոր հովիտներով, վտակներով և խորշերով, ուր սիրում էր շրջել երէն և թաքչիլ աղուէսը։ Ամբողջ դարաստանը Պօտօմակի վրայ Մօն-Վէրնօնից մինչև Բէլ-

վուառ՝ Վիլլիամ Փերֆաքսի աւանը—իւր անտառներով, բլուրներով և գեղանկար պարտէզներով մի անվերջ և բազմազիմի զբօսանք էր մատուցանում մարդուս»:

Մեր Վաշինգթոնն էլ խօսում է իւր ագարակի մասին, ցոյց տալով, թէ որ աստիճանի սիրահարուած էր Մօն-Վէրնօնին: «Բովանդակ Միացեալ նահանգների մէջ չես գտնիլ որանից աւաւելի հաճելի դիրք ունեցող մի կալուածք: Սա գտնվում է մի բարձրաւանդակ և ողջաւոտ երկրի մէջ, ծայրայեղ ցրտից և խորշակից հաւասար հեռու ընկած լայնութեան գօտի տակ և աշխարհիս ամենաչքնաղ գետերից մինի վրայ, որ տարուայ իւրաքանչիւր եղանակին լիքն է ամեն տեսակ ձկներով, ինչպէս են ալօզներ, տարեխներ, ծածաններ, թառափներ և այլն: Երկրի սահմանները տասն մղոնից աւաւել երկարութեամբ ողողվում են գետի ջրերով և սրանց մէջ պատահում են ձուկի անթիւ որսարանք, ասես թէ ամբողջ գետեզրը մի մեծ ձկնորսարան լինէր»:

Վիրգինիայի մէջ իւրաքանչիւր մեծ տընկաստան մի ջոկ պետութեան էր նմանում Վաշինգթօնի ժամանակ: Կառավարութեան կենդրոնը տանտիրոջ բնակած գլխաւոր տունն էր. իսկ մերձաւոր շէնքերից մէկում նստում էր

ստրուկների վերատեսուչը, որ պետության առաջին պաշտօնեայի պէս մի անձն էր։ Սրա բնակարանին կից գտնվում էին խոհանոցներ, գործարաններ, գոմեր, ամբարներ, շտեմարան ու մառաններ և այլն։ Սևերի ամբողջ մի երամ աշխատում էր բակի և տների մէջ, առաւել մեծ մասն վաստակում էր դաշտերի վրայ։ Դրանց զուարթ տնակները մի առանձին գիւղ էին կազմում. ամեն մէկը մի փոքրիկ պարտէզ ունէր, բակերը լիքն էին ընտանի թռչուններով։ Եւ այս տնակների դիմաց արևի տակ ոստոստում էր սև մանկտին։

Այս թեթև նկարագրից յետոյ ընթերցողը թող ինքն բարեհաճի լրացնել Մօն-Վէրնօնի պատկերն իւր երևակայութեան մէջ։

Նահանգների մէջ կային շատ կալուածատէրներ, որոնք Ֆրանսիայի Մէրօվեան իշխանների նման բոլոր վարչական գործերը տեսուչներին էին յանձնում և ինքեանք ուրիշ ոչ մի բանի հոգ չ՚ունէին, բայց թէ առատ հասոյթ ստանալ և ըստ կարելոյն հեշտ կեանք վարել։ Այսպէս չէին Մօն-Վէրնօնի կարգերը։ Վաշինգթօն իւր փոքրիկ պետութեան մէջ միանգամայն և՛ իշխան էր և՛ հայր։ Ամեն օր նա ձի նստած անձամբ աչքէ էր անցնում իւր արտերը, դաշտերը, որսարանները, աղօրիքն և այլն։

Այս շրջագայութիւնների ժամանակ նա սովորաբար կրում էր ոսկեզօծ կոճակներով մի գեղնազոյն ֆրակ։

Ի դէպ ենք համարում այս առթիւ յառաջ բերել Պ. Նօյմանի խօսքերը, որով սա նկարագրում է վայելչակազմ Վաշինգթօնին.

«Վաշինգթօնի ձևերի մէջ ոչ մի վէտական բան չ՚կար. կամքը հաստատ էր, բայց ոչ կամակոր և ամբարտաւան։ Յաղթանդամ մարմինը, որ վեց ոտնաչափից բարձր էր, ներկայացնում էր զուգաչափ ներդաշնակութեան մի սիրուն օրինակ. դրան կարելի էր նմանցնել մի հոյակապ շինուածքի, որի մէջ ջոկ ջոկ մասերի կատար զուգակցութիւնը մի առանձին շուք է ընծայում ամբողջին։ Ըւանդոտ սիրտը միշտ սանձահարուած էր լուրջ մտքով. կորովի արիութիւնը երբէք չէր յանդում յանդգնութեան և նախատես զգուշութիւնը՝ վեհորոտութեան։ Պատողութիւնը կորովի էր, յիշողութիւնը սուր. փութաջան էր, աշխատասէր և ինչքան էլ շատ զբաղուած լինէր, երբէք չէր նեղսրտում և միշտ մնում էր բարեհամբոյր»։

Վաշինգթօն իւր դերդաստան հետ եկեղեցի յաճախելիս, Վիլլիամ Ֆէրֆաքսին և կամ ազգականներին և բարեկամներին այցելելիս՝ մի քառալոյծ կառք էր նստում և այն ժամանակ

խափշիկ կառավարն և սպասաւորը հագած էին լինում փայլուն շորեր։

Սակայն ինչպէս սպատահեցաւ, որ Վաշինգթօնի նման ազնիւ մարդն էլ ստրուկներ էր պահում, կ'հարցնէ անշուշտ ընթերցողն։ Այս հարցմունքն անողին կ'խնդրենք հետևեալն ի միտ առնել։ Վաշինգթօն մի ստրկական պետութեան մէջ էր ծնուած, իսկ պետութեան կարգերը միշտ մի առանձին կնիք են դնում իւրաքանչիւր անհատի վրայ։ Եթէ մենք, մի պատմական անձնաւորութիւն քննելիս, դանց առնենք ուշի ուշով հետազօտել նրա ժամանակին տիրապետող օրէնքները, սովորոյթներն և մտային ուղղութիւնները, բնաւ չենք կարանալ մի արդար դատաստան կտրել նրա մասին։ Նախ և առաջ ուրեմն պէտք է ուսումնասիրել այն ժամանակն և ապա թէ հարցնել, թէ քննելի անձն որ աստիճանի հաղորդ էր իւր ժամանակի մտքերին և բարքերին։

Ստրկութիւնը մի չար ախտ էր պետական կեանքի մէջ, մանաւանդ այն ստրկութիւնը, որ յառաջ էր եկել քրիստոնէութեան ժամանակ։ Մարդկային շահասիրութեան պէս խորամանկ և հնարագէտ բան չէ կարող լինել։ Մի օր Լիւդովիկոս ԺԴ ամենաքրիստոնեայ թագաւորին պատմում են, թէ խափշիկները չեն կամենում

քրիստոնէութիւն ընդունել և թէ պէտք էր ստրկացնել նրանց, որպէս զի քրիստոնեայ դառնային. այլ ևս—թէ խափշիկ ազգն իւր գերիներին սպանելու սովորութիւն ունի և թէ ուրեմն պէտք էր ստրկութիւն մտցնել գաղութների մէջ, որպէս զի խափշիկներն իրենց գերիներին չ՚սպանէին, այլ մեզ վաճառէին. այսպիսով փրկուած կ՚լլինէր նրանց կեանքն և ստրկութիւնը նրանց համար մի բարերարութիւն կ՚դառնար։

Թագաւորը հաւանեցաւ այդ մտքերին։ Այնուհետև պօրթուգալցիների հնարած անիրաւութիւնը Ֆրանսիացւոց մէջ էլ օրէնքի զօրութիւն ընդունեց և խափշիկներին իբրև ստրուկ Աֆրիկայից Ամերիկա տանելն մի ընդհանուր սովորութիւն դարձաւ նաև Ֆրանսիայի և Անգլիայի գաղութների համար։ Այս եղանակով յափշտակուած սևերի թիւն երբեմն քառասուն միլլիօնի էր հասնում։ Հայրերի մեղքը յետոյ որդիները տուժեցին և մենք գիտենք, որ վերջին ժամանակներս շատ արեան զոհեր պէտք եղան սևերից խլուած մարդկային իրաւունքը վերականգնելու համար։

Վաշինգթօնին դառնալով, մեր պատասխանի մէջ չ՚վրիպելու համար, հարցնենք, թէ ինչ դիրք էր բռնում նա իւր ժամանակին տի-

բարկուող կարգերի հանդէպ, որոնց մէջ ինքն էլ սնուած էր, և պատասխանն այս կ՚լինի, որ նա մի խնամակալ հայր էր իւր ստրուկների համար: Թէ արդեօք ի՞նչ արաւ նա այս ստրուկ-ների համար, գրքոյկիս վերջն առիթ կ՚ունե-նանք պատմելու: Նա չէր նեղում նրանց տա-ժանելի աշխատանքով, բայց չէր էլ թոյլ տա-լիս պարապ նստել. դատարկ անգործութիւնն մի ատելի բան էր նրա աչքին:

Ամբողջ բնութիւնը մի մեծ գործարան է. գործելուց դադարող գործարանաւոր մարմին-ներն անհրաժեշտ կերպիւ մեռնում են: Մար-դու մարմնի և հոգու պահպանիչն օգտակար աշխատութիւնն է. իսկ ոգեկան անկման պատ-ճառն՝ դատարկութիւնը: Մի շահաւէտ զբաղ-մունք չ՚ունեցող մարդու գլուխը վատ խոր-հուրդների օթևան է, որով և ճշմարտանում է այս առածն, թէ ծուլութիւնն է մայր չարեաց: Ով որ կամենում է իշխանութիւն բանեցնել ու-րիշների վրայ, պէտք է որ հոգ տանէ զբաղեցնել նրանց պատշաճաւոր կերպիւ: Բայց իւրաքան-չիւր մարդ գէթ մի անձի վրայ իշխանութիւն ունի, այսինքն ինքն իւր վրայ, իւր անձի վրայ. ուրեմն ջանալու է, որ այս անձն դատարկ չ՚մնայ: Մեր յատուկ անձին վրայ աշխատելն աշխա-տութեան ամեն տեսակներից գերազանցն է, և

մենք այն ժամանակ միայն իրօք մեր անձի վրայ աշխատած կ'լինինք, երբ յարատև ճըգնութեամբ փութանք և ձգտինք կատարելութեան հասցնել այն գործը, որ վարում ենք։ Այս առմամբ ամեն մի մարդու հնարին է կատարելութեան թեկնածել, ինչ էլ լինէր նրա գործին — ասեղ թէ սլաձին, տապար թէ արօր, գրիչ թէ բրիչ։ Քանի որ մարդս միայն ստիպմամբ է աշխատում, նա դեռ մարդկային գոյութեան ստորին աստիճանի վրայ է և անկման վտանգին ենթակայ. սակայն արտաքին ստիպմունքը դեռ պահպանում է նրան, դեռ օգտակէտ է նրա համար, թէև չէ կարող շատ բարձր կատարելութեան հասցնել նրան։

Բայց հենց այն օրից որ մարդս չէ թէ միայն արտաքին ստիպմամբ է մի պարտք կատարում, հապա և ինքն իրեն ոգեպէս զարգացնելու որոշ գիտակցութեամբ, — այն օրից նա դառնում է մի առաւել բարձր դասի անդամ։ Մարդկային սեռի բոլոր բարերարներն այս վերջին դասին են պատկանած։ Նրանք քրտնաջան վաստակելիս երջանկութիւն են զգացել այս մտքի մէջ, թէ իրենց աշխատութեամբ հաւասար չափով օգտակար են եղած թէ իրենց և թէ ուրիշների համար։ Այս դասը պէս պէս բաժանումներ ունի. բայց որ բաժանման էլ պատ-

կանէր մի մարդ - մարդկային երջանկութեան վերջին սահմանին տանող ճանապարհն արդէն բաց է նրա առջև: Այս ճանապարհի վրայ ամենքս կարող ենք ոտք դնել. բաւական է որ ճշտիւ և խղճի մտօք կատարէինք ամեն մէկիս վիճակուած պարտքը: Այո՛, պարտքի կատարումն է այն կախարդական զէնքը, որով մի մարդ հասնում է իւր բախտին:

Աշխատանքի ուղիղ գնահատութեան նրկատմամբ Վաշինգթօնի և նրա ընկերների օրինակը, որոնց մէջ առաջին տեղն ազնիւ Ֆրանկլինին *) է պատկանում, անհետ չ'անցաւ Ամերիկայի համար: Լաբուլէ ֆրանսիացին այս մասին խօսելով, ասում է.

«Ինչքան էլ յառաջ գնանք, այնքան էլ վերահաս կ'լինինք, թէ աշխատող մարդն է միայն իրօք ազնիւ մարդը և թէ ծոյլը, թէկուզ սա շատ հարուստ էլ լինէր, մի դատապարտելի յանցաւոր է: Ամերիկայի Միացեալ Նահանգների մէջ պարապ մարդը հասարակութեան թշնամի է համարուած. մայրերը հեռու են պահում նրանցից իրենց աղջիկներին և ամեն մի խելացի

---

*) «Բենիամին Ֆրանկլին», գեւմ. Թարգմանեց Փ. Վարդանեան: Երկրորդ տիպ: Թիֆլիս, 1885:

մարդ արհամարհում է նրան։ Ով որ ոչինչ չէ գործում, անշուշտ վատութիւն է գործում, ասում են ամերիկացիք, և շատ իրաւամբ»։

Վաշինգթօն սովոր էր մշակների աշխատութեան կանոնաւորելուն նուիրել իւր ժամանակի մի մասը, և այս անում էր մերթ հսկելով նրանց վրայ, մերթ ամեն մէկին իւր զօրութեան չափաւոր գործ նշանակելով։ Նա հաւասար հեռու էր պահում նրանց թէ չափազանց աշխատանքից և թէ պարապութիւնից, այս նպատակով նա դիտում էր ամեն մի գործի ընթացքը, յառաջ գալիք արգելքներն և ապա թէ չափ դնում մէկին և միւսին։

Սակայն ամենալաւն այս էր, որ նա ստէպ ինքն իւր ձեռքով էր գործակից լինում մշակներին։ Ստրկութիւնից յառաջ եկած պատուհասներից մինն էլ տէրերի մէջ արմատացած այն անպիտան կարծիքն է, որ իբր թէ գիւղական աշխատանքն և կամ ձեռագործութիւնը մի անարգ բան է։ Ստրուկները տեսնելով, որ ինքեանք միայն ստիպուած էին հոգալ այս [illegible] գործերը, ասես թէ նզովեալ էին զգում իրենց։ Այս կարծիքն ընդհանուր էր հին ժամանակներում, յետոյ դարձեալ յերևան եկաւ Ամերիկայի մէջ։ Թողնում ենք, որ ամեն մարդ ինքն գտնէ, թէ այսօր իրենց ազնիւ կոչողների

մէջ արդեօք շատերը կան, որ աւելի ուղիղ հայեացք ունենային այս մասին։

Մօն-Վէրնօնի ստրուկների համար մի անսովոր բան չէր սպարտէզի կամ դաշտի մէջ զբաղուած տեսնել Վաշինգթօնին։ Մի անգամ նա ամբողջ օրերով աշխատեց դարբնոցի մէջ մի նոր և առաւել յարմար արօր շինելու. գործը յաջողեցաւ և մշակները տեսան, թէ ինչպէս նա ճիգ էր թափում հերկելու խիտ խիտ դաշտերով պատած երկիրը։ Մի ուրիշ անգամ ագօրինելից մին ջրի յորձանքից քանդուելու վրայ էր. Վաշինգթօն, չնայելով յորդահոս անձրևին, վազեց դէպի դետն և մշակների հետ միասին փրկեց ջաղացքը։

Նա սովորաբար շատ վաղ էր զարթնում և ձմեռ ժամանակ լուսանալուց առաջ էր վեր կենում. բայց իր սենեակը սաքցնելու համար ուրիշներին նեղութիւն չէր տալիս։ Նա ինքն էր վառում կրակարանն և այնուհետև սկսում էր կարդալ և գրել, մինչև որ պատրաստ լինէր նախաճաշը—որ մատուցվում էր ամառը 7 ժամին, ձմեռը 8-ին։ Այս նախաճաշն էր երկու բաժակ թէյ և մի քանի հատ սիմինդրի շօթ։ Ճաշում էր երկու ժամին և չնայելով իւր հարստութեան՝ սեղանը շատ պարզ էր. կերակուրի վրայ ընդունում էր երկու բաժակ գինի, իսկ

ուրիշ ժամանակ սովորական ըմպելին էր գարեջուր կամ մրգօղի։ Պառկում էր քնելու երեկոյեան 9 ժամին։

Գույքերի վերաբերեալ գործերի համար նա պահում էր մի առանձին տոմար, իսկ նամակների համար՝ ջոկ ջոկ գրքեր. և այսպիսի կարգ պահպանելով նա միշտ տեղեակ էր լինում իւր ամեն գործերին։

Վաշինգթոնի դաշտերի վրայ մշակուած բոյսերից գլխաւորն էր [illegible], որ մեծ քանակութեամբ Անգլիա էր ուղարկվում։ Այս բոյսի համար առանձին ամբարներ էին շինուած Պոտոմակի վրայ։ Օտարազգի առևտրական տներն այն աստիճանի վստահ էին Վաշինգթոնի ազնուութեան վրայ, որ ապրանք գնելիս երբէք չէին զննում նրա նշանով կնքուած հակերը։

Նրա բնաւորութեան մի էական յատկանիշն էլ հիւրասիրութիւնն էր. նրա հիւրերն այնպիսի մարդիկ էին, որոնք յետոյ դրեթէ ամենքը մի մի անուանի մարդ դարձան Ամերիկայում։ Վաշինգթոնի տունն որսասէր դրացիների հաւաքման միջավայրն էր, մանաւանդ աղուէս բռնելու ժամանակ. նա ինքն էլ շատ սիրում էր այս զբօսանքը։

Այցելուների մէջ, որոնցից մինն էր և ազնուոր Ֆէրֆաքս լորդը, կային պաշտօնական ու-

սում առած մարդիկ, և դրանց հետ մտային տուր և առ ունենալն Վաշինգթօնի համար նոյնչափ կարևոր էր, որչափ և ընտիր գրքեր կարդալը:

Նրա գործունէութիւնը չէր ամփոփուած միայն կալուածքի մէջ, հապա տարածվում էր և դրանցից դուրս: Այսպէս, օրինակի համար, նա վճռեց մի օր մշակելի շինել մի դրսի ճահիճ, որ երեսուն անգլիական մղոն երկայնութիւն ունէր և տասն մղոն լայնութիւն: Տաժանելի էր այս գործն և շատ վտանգաւոր. տեղ տեղ նրան պէտք էր լինում անցնել մամռապատ անտառների միջով, այլ ուրեք՝ շաւիղ բանալ անթափանցելի մացառների և պատատուկ բաղեղների միջով, ուր նրա ձին ստեպ մինչև փորն ընկղմում էր եղտիւրի մէջ. այնուհետև հարկ էր լինում հետի յառաջ գնալ երերուն կեղևի վրայից և շրջատեսութիւն անելուց յետոյ դարձեալ նոյն վտանգաւոր ճանապարհով գալ հասնել դէպի ձին: Այսպէս նա զանազան կողմերից ներս մտաւ մինչև այն ժամանակ մշակութեան անմատչելի մօրի մէջ և ապա թէ պատրաստեց դրան չորացնելու և արօրադրելու մի ծրագիր: Արդէն հերիք էր, որ Վաշինգթօն ինքն էր այս ծրագրի հեղինակն, որպէս զի մի քանի հարուստ մարդիկ իսկոյն մի ընկերութիւն

կազմէին և նրան միջոց տային գործն ի գլուխ հանելու։ Շատ տարիներ չանցան և ահա վայրենի գաւառից յառաջ եկաւ մի արգաւանդ երկիր, որ լի էր բերրի արտերով և սիգաւէտ մարգերով։

Այս գլխի մէջ նկարագրուած կեանքի եղանակն այն աստիճանի հաճելի էր պատուական Վաշինգթոնին, որ նա ոչինչ չէր ուզում, բայց թէ շարունակել դրան մինչև իւր վերջին շունչը. բայց այլ էր ճակատագրի վճիռը։ Ինչ որ նա երազել անգամ չէր կարող իբրև մի օրինապահ և մայր Անգլիային անձնուէր մարդ,— կատարուեցաւ։ Գաղութները վճռի բռնուեցան մայր երկրի հետ, և այս եղաւ պատճառ, որ Վաշինգթօն յանկարծ դուրս նետուեցաւ իւր հանգիստ տնային շրջանից։

---

## Է

## ՄԻՆՉԵՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

Տեսնենք թէ ինչո՞ւ էին թշնամացել գաղթականները մայր երկրի հետ։—«Վայ օրինազանցին»։—Թշնամութեան սուլթ տուող օրի-

նաղանց՝ անգլիական կառավարութիւնն էր։ Անգլիայի սահմանադրութեան հիմնական օրէնքով ոչ մի հարկ կարելի չէր պահանջել ազգից՝ առանց երեսփոխանների հաճութեան։ Սակայն կառավարութիւնը յանկարծ յանդգնեցաւ առանց խորհրդարանի հաւանութեան հարկ դնել գաղթականների վրայ, որով և մեղանչեց պետական օրէնքների պարզ որոշման դէմ։

Ամեն մի ազնիւ մարդ կ՚համաձայնի մեզ հետ, եթէ ասենք, որ պատմութեան ամենաողբալի տեսարաններից մին այն է, երբ մի կառավարութիւն օրէնքների աւանդապահ հանդիսանալու փոխանակ, որ իւր սուրբ պարտքն է, աշխատում է հենց իւր ձեռքով քայքայել դրանց։ Այս տեսակ մի եղկելի տեսարան է ներկայացնում և Անգլօ-Ամերիկայի վէճը։

Անգլիայի հեռատես դիւանագէտներից ոմանք արդէն առաջուց էին գուշակել այս անիրաւութեան հետևանքն և, օրինակի համար, Կրէմպըն լօրդն ուղղակի նկատել էր Ֆրանկլինին, թէ. «Զ՚նայելով ձեր այնքան հաչակուած սիրոյն դէպի Անգլիան, գիտեմ որ դուք ամերիկացիքդ մի օր պիտի խզէք ձեզ սրա հետ միաւորող կապերն և անկախութեան դրօշակը վերցնէք»։

Ժամանակ անցնելուց յետոյ մարդիկ նորից

յիշեցին այս խօսքերն և կամեցան իմանալ, թէ ինչու էր այդպիսի դուշակութիւն արել Կրէմ-դըն լօրդը: Հետազօտութիւնն ապարդիւն չ'մնաց: Մինչդեռ Ամերիկայի գաղթականութիւններն օրինապահութեան ամենաընտիր օրինակ էին հանդիսանում, Անգլիայի կառավարութիւնն ապօրինութեան մի նեցուկ էր կազմում, և Կրէմդըն արդէն կանխաւ տեսնում էր, որ կառավարութեան անհիմն պահանջներն անշուշտ մի օր ընդդիմութիւն պիտի յարուցանէին գաղթականների կողմից:

Նրա դատողութեան դէմ Ֆրանկլին պատասխանել էր. «Ոչինչ բան այնքան հեռու չէ իմ հայրենակիցներից, ինչքան որ մայրենի երկրից զատուելու և մի առանձին պետութիւն կազմելու միտքը», աւելցնելով նոյնպէս — «Միայն թէ դուք մեր պատուին չ'դիպչէիք». առ որ լօրդն էլ ասել էր խորհրդաբար. «Ճշմարիտ է, և հենց այդ է գալոց խռովութիւնների մի պատճառը, որ ես այժմէն գուշակում եմ»:

Կրէմդըն լօրդի խօսքերը կատարուեցան. Գէորգ Թագաւորի պաշտօնեաները կամայօրէն մաքս և հարկ դրին գաղթականութեանց մի քանի ապրանքների վրայ: Այս անարդար օրէնքի դէմ բողոքելու համար ամերիկացիք էլ որոշեցին չ'գնել ոչ մի Անգլիայից բերուած ապրանք, որ

ենթակայ էր մաքսին։ Կառավարութիւնը յետ առաւ իւր սահմանած օրէնքը, բայց ոչ թէ արդարութիւնը վերահաստատելու ցանկութեամբ, այլ այնպիսի մի նոր հարկ դնելու մտքով, որից որ ոչ մի ամերիկացի չ'կարանար խոյս տալ։ Նա մտածում էր—պայմանագրերն չեն կարող վաւերական համարուիլ, մինչև որ դրոշմակիր թղթի վրայ գրուած չ'լինին. արդ եթէ մենք այս թղթերի համար մի հարկ սահմանենք, ամերիկացիք կ'ստիպուին վճարել դրան, որովհետև նրանք իբրև մի առևտրական ժողովուրդ միշտ կարօտ են միմեանց հետ գրաւոր պայմաններ կնքելու։ Սակայն կառավարութիւնն այս բանի մէջ էլ վրիպեցաւ, որովհետև ամերիկացիք վճռեցին լուկ բանաւոր խոստմամբ շատանալ առևտրական դաշնադրութիւնների մէջ, որով և անգլիացի հարկահաններն ոչ մի գնող չ'գտան դրոշմաւոր թղթերի համար։

Սրտերն արդէն սկսել էին յուզուիլ, ժողովրդին հասած կոպիտ զրկանքը տեղ տեղ բռնի ապստամբութեան առիթ էր տուել, բայց խելացի մարդիկ աշխատում էին, որ ընդհանուր շարժումը մի օրինական ընթացք ստանար։ Վաշինգթօն դեռ այժմս էլ բացէ ի բաց մերժում էր մայրենի երկրից զատուելու գաղափարը։ «Կարող եմ յայտնել քեզ իբրև մի փաստ»,

գրում էր նա բարեկամներից մէկին, «որ անկախութիւնն ոչ գաղթականների կամքին է յարմար, ոչ էլ օգտին»։—«Այնպէս», աւելացնում էր նա, «վստահ եղիր, որ նրանցից և ոչ մին թոյլ չի տալ երբէք եղծանել այն թանգագին իրաւունքներն, որոնք իւրաքանչիւր ազատ պետութեան բախտի էական մասերն են և առանց որոնց ոչ ազատութեան ապահովութիւն կայ, ոչ սեփականութեան, ոչ էլ կեանքի»։

Անգլիայի խորհրդարանն էլ կոյր դտնուեցաւ, հաւանութիւն տալով կառավարութեան՝ բռնի միջոցներ գործ դնելու գաղթականների դէմ։ Բայց և այնպէս ամերիկացի ժողովրդի ահագին մեծամասնութիւնը չէր կամենում, որ գործը բացարձակ դժտութեան հասնէր։ Այս մտքով աղօթքներ էին տալիս եկեղեցիների մէջ, այս փափագով լի հանրագրեր էին առաքվում Լօնդօն յանուն խորհրդարանի և թագաւորի։ Եւ Վաշինգթօն գրում էր նոյն խորհրդարանի անդամներից մէկին.

«Ինչ շարժառիթով էլ յետս կոչէիք դրոշմագրի հարկը, մենք կ՚ուրախանայինք. պատճառ եթէ խորհրդարանն անդաւանալի որոշում դնէ այս հարկը պահանջելու, այն ժամանակ նրա բռնութեան հետեւանքը թէ մայր երկրի և թէ մեզ համար դուցէ աւելի վատթար կ՚լի-

նի, քան որ երևակայում են արգլիս: Ուստի ամեն մարդ, որ յետս կոչման համար քուէ կ'տայ, ամեն մի բրիտանական հպատակի շնորհակալութեան արժանի կ'լինի, և ես այժմէն իսկ նուիրում եմ ձեզ իմս 'ի բոլոր սրտէ»:

Դրօշմագրի հարկն էլ ջնջուեցաւ, բայց դարձեալ այն պատճառով, որ դա չէր յաջողած: Ամերիկայի գաղթականների դէմ չարիք նիւթելու ցանկութիւնը դեռ կենդանի էր:

Փոքր ինչ յետոյ անգլիական խորհրդարանի և կառավարութեան որոշմամբ թէյի, ապակու, նկարչութեան ներկերի և թղթի վրայ մաքս դրուեցաւ: Այս բանը նորից սիրտերը դրգռեց: Գաղութների մէջ առանձին ընկերութիւններ կազմուեցան, որոնց անդամներն խօսք էին տալիս չ'գնել ոչ մի ապրանք, որ գալիս էր Անգլիայից: Յոյս կար, թէ գոնէ այս միջոցով կարող կ'լինէին վերցնել տալ նոր մաքսերը: Վաշինգթօն գրում էր մի բարեկամի.

«Այս րոպէիս, երբ մեր գոռոզ տէրերն ոչինչ բանով չեն ուզում գոհ լինել, բայց թէ մեր ազատութեան կործանմամբ, ես շատ կարևոր եմ համարում այնպիսի մի դարման գըտնել, որն որ կարող լինէր ի բաց վանել նրանց հարուածն և պաշտպանել մեր հայրենաւանդ իրաւունքը: Բայց թէ ինչ դարման—այս է

խնդիրը։ Ներքին համոզմունքս ասում է ինձ, որ մեզնից ոչ մի մարդ չփոխի վարանի զէնք վերցնել մեր սուրբ իրաւունքների պաշտպանութեան համար. սակայն—շեշտելով եմ ասում—զէնքը մեր վերջին օգնականը թող լինի, վերջին ապաւէնը։ Գուցէ առարկէք ինձ. Արդէն տեսանք, թէ ինչ կշիռ ունեցան մեր աղաչանքներն գահի և խորհրդարանի առջև։ Բայց և այնպէս եկէք դարձեալ մի բան փորձենք—արդեօք չէի՞նք յաջողիլ յարգել տալ մեր իրաւունքները, եթէ նրանց վաճառականութիւնն և գործարաններն ուժաթափ անէինք, սպառտասէինք։ Հիւսիսային նահանգներն արդէն սկսել են ի գործ դնել այս եղանակը. կարծում եմ թէ սա մի լաւ միջոց է և ապարդիւն չի մնալ, եթէ ամեն տեղ խստիւ ի կիր առնուի»։

Վաշինգթօնի այս նամակից ակնյայտնի երևում է այն ժամանակի ամերիկացւոց բռնած դիրքն Անգլիայի ապօրինի ընթացքի դէմ։ Սակայն Անգլիան մի անիրաւութիւնից դէպի միւսն անցնելով, և՛ս առաւել յառաջ գնաց մի անգամ սկսած չար գործի մէջ և բարձրագոյն դաւաճանութեան մեղապարտ քարոզեց նոր հարկերն վճարելու զլացող մարդիկներին։ Եւ երբ ամերիկացի դատաւորներն չ՛կամեցան այս օրէնքով վարուիլ, Անգլիան նոր ատեաններ

հաստատեց նաւատորմի սպայներից, որոնց հաւատարմութեան վրայ վստահ էր, և ապա թէ — դարձեալ երկրի օրէնքներին հակառակ — նոր քաղաքային խորհուրդներ կազմեց, հիները լուծելով: Վերջապէս այս կարգադրութիւնն էլ արաւ որ ապագային բոլոր ծանր յանցանքներն ոչ թէ Ամերիկայի մէջ պիտի քննուէին, այլ նոյն իսկ Անգլիայում:

Այս բռնագբօս և անագորոյն զեղծումներն և՛ս առաւել զայրացրին էն էլ թէ չէ գրգռուած գաղթականներին. սաստ և անդ դառն տրտունջներ լսուեցան, տեղ տեղ ամերիկացի ամբոխի և անգլիական զինուորների մէջ բանը կռուի հասաւ: Վերջիններս, ամերիկայիներին ծաղրելու համար, [illegible] անուն էին տալիս նրանց, որ իրոքէզների լեզուով ասել է՝ վեհերոտ կամ վատթար. որի փոխարէն ժողովուրդն էլ խեցգետին և արիւնաուշտ [illegible] — [illegible] էր անուանում զինուորներին, որոնք շառագոյն համազգեստ ունէին հագած:

Անգլիայից թէյով եկած նաւերը մի քանի ժամանակ արտաքսվում էին Բօստոնի նաւահանգստից. կառավարութիւնն, արտաքսողներին պատժելու համար, հրամայեց պաշարել նաւահանգիստն անգլիական նաւերով և յայտարարեց, որ էլ բնաւ չիպիտի թոյլ տար հալածել

թէյաբեր նաւերը։ Այս հրամանի վրայ Բոստոնցիք բոլորովին զայրացան և այս միջոցին էր, որ հնդիկի նման ծպտուած մի քանի ամերիկացիք նաւերը մտնելով, 342 արկղ թէյ թափեցին ծովի մէջ։

Անգլիացիք խսպառ գոցեցին Նաւահանգիստը, քաղաքը մեծ նեղութեան մէջ ընկաւ, առևտուրը գրեթէ ամենևին չքացաւ։

Այնուհետև կառավարութիւնն առաջարկեց Լօնդօնի խորհրդարանին, որ Մասսաչուզէթի բնակիչներին ապստամբ ճանաչուին և բոտ այնմ էլ պատժուին։

Խորհրդարանի մէջ թեր և դէմ ձայներ լսելի եղան։ Մի զօրապետ, որ անժոյժ ցասմամբ պարսաւում էր մանաւանդ Բոստոնցիների արարքը, յայտնեց, թէ ինքն պատրաստ էր աշխարհիս մի ծայրից դէպի միւսը վանել բոլոր ըմբոստ ամերիկացիներին, միայն թէ հինգ գունդ տային իրեն։ Ուրիշները պաշտպանում էին ամերիկացիներին, և, օրինակի համար, Վիլքէնս պատգամաւորն ապացուցանում էր, թէ Անգլիայի վարմունքը գաղթականների հետ միանգամայն դատապարտելի էր և անիրաւ։

«Մեր պաշտօնեաներն են», ասում էր նա, «որ ձգտում են կտրատել Հիւսիսային Ամերիկայի և Մեծ Բրիտանիայի մէջ եղած կապերը,

ոչ թէ գաղթականք. սրանք ոչինչ բան չեն ուզում, բայց թէ խաղաղութիւն, ազատութիւն և ապահովութիւն»: Այս ասելով նա աղաչում էր աւելի հաշտ աչքով նայել գաղթականների վրայ: «Ձեմ երկբայում», գոչեց նա իւր ճառը կնքելիս, «որ դուք կարող կ՚լինիք հրկիզել Բօստօնն և կամ մի զօրեղ պահակ գունդ դնել այն տեղ. բայց իմացած եղէք, որ այն ժամանակ բոլոր նահանգը կը կորչի ձեզ համար: Արդէն տեսնում եմ Ամերիկայի անկախութեան ծագելն և զօրանալը, տեսնում եմ, թէ ինչպէս նա, իւր ազատութեան վրայ պինդ կենալով, աշխարհիս ամենաճոխ և հզօր պետութիւնների կարգն է անցնում: Ուզում էք արդեօք, որ գաղթականները յուսահատութեան հասնէին: Օ՜ն ուրեմն: Դուք պիտի գտնէք ձեր առջև մի կորովի ազգ, որ բռնակալութեան դէմ բորբոքուած վրէժից ներշնչուելով, հենց նոյն քաջութեամբ պիտի պաշտպանէ իւր ազատութիւնն և գոյքը, ինչ քաջութեամբ որ զէնք էին վերցնում և մեր փառաւոր նախնիքն իրենց վտանգուած ազատութիւնն և գոյքը պաշտպանելու համար»:

Այս ազդարարութիւնն օգուտ չ՚ունեցաւ. խորհրդարանի մեծամասնութիւնը կուրացեալ կառավարութեան համամիտ մնաց և Մասսա-

չուզէլժ Նահանգի բոլոր բնակիչներին պատե-րազմական օրէնքների խստուլժեան ենլժարկեց, իբրև ապստամբների։

Կռիւը սկսաւ։

Հենց որ այս որոշումը յայտնի եղաւ Մաս-սաչուզէլժում, Նահանգի երեսփոխաններն խս-կոյն գումարուեցան Սալէմի մէջ և այս տեղից հրաւէր կարդացին Ամերիկայի բոլոր գաղլժա-կաններին, որպէս զի փուլժան շուտով մի ընդ-հանուր ժողով կազմելու։ Հրաւէրն ամեն տեղ ընդունելուլժիւն գտաւ. միայն Գէորգիա Նա-հանգի պատգամաւորներն փոքր ինչ ուշ միա-ցան միւսներին։

Ընդհանուր ժողովը հաւաքուեցաւ Փիլա-դէլֆիա 4 Սեպտեմբերի 1774։

Արջմիտ և պատկառելի մարդիկ էին այս ժողովի յիսունմէկ անդամներն, որոնց մէջ ա-մենից նշանաւորն էր Վաշինգլժօն։

Սա փոքր ինչ առաջ այսպէս էր գրում բարեկամներից մէկին. «Ի՞նչ բանի վրայ է մեր այս երկար վէճը. արդեօք ամեն մի փունտ լժէյի համար երեք պէ՞ննի վճարելու մաքսի վրայ է—ոչ. միմիայն մեր իրաւունքների պաշտպա-նուլժեան համար է, որ վիճում ենք այսպէս երկար։ Եթէ ես գէլժ մի մազի չափ հաւատ ունենայի, որ բրիտանական խորհրդարանը իրաւ

ազատ է առանց մեր հաճութեան հարկ դնել մեր վրայ, այն ժամանակ աղաչանքի, այս միայն աղաչանքի մէջ կ'որոնէի մեր օգնութեան միակ միջոցը։ Բայց ես հաստատ համոզուած եմ, որ այս խորհրդարանը ընաւ իրաւունք չ'ունի իւր աջն իմ գրպանիս մէջ դնելու, ինչպէս որ ես էլ չ'ունիմ իրաւունք իմս ուրիշինի մէջ դնելու»։

Ժողովի նիստն ընդհանուր ցանկութեամբ մի աղօթքով բացուեցաւ և քարոզիչ քահանայն արդար դատի համար Աստուծոյ հովանաւորութիւնը խնդրելուց առաջ՝ Սաղմոսի հետևեալ խօսքերը կարդաց.

«Դատեա՛ Տէր զայնոսիկ, ոյք զատեն զիս. մարտի՛ր ընդ այնոսիկ, որք մարտնչին ընդ իս։ Ա՛ռ զզէն և զասպար քո և արի՛ յօգնել ինձ»։

Ժողովը նախ և առաջ մի յայտարարութիւն գրեց գաղթականների անուամբ, որի մէջ համառօտ և պարզ յիշատակուած էին նրանց օրինական իրաւունքները, յետոյ որոշեց խստիւ չ'գնել Անգլիայից եկած ապրանքներին, մինչև որ անհիմն մաքսերը յետ չ'առնուէին, և վերջապէս յօրինեց երեք հատ թուղթ, որոնք էին մի հանրագիր առ անգլիական ազգը, մի արձանագիր առ ամերիկացւոց ազգն և մի աղեր-

սագիր առ Անգլիայի Թագաւորն։ Նոյն իսկ յե֊տե՛ն ճգնաժամին անգամ ժողովը կամենում էր հաշտ միջոցներով խափանել մօտալուտ չարիքը։

Հաստատուն և արդար էին անգլիական ազգին ուղղուած խօսքերը։

«Ձեզ պատմում են, ասուած էր հանրագրի մէջ, թէ մենք ապստամբներ ենք, թէ մենք անկախութեան ենք դիմում, իշխանութեան հնազանդելուց դարշելով։ Հաւատացէք, որ մի֊այն զրպարտիչն այդպէս կ՚խօսի։ Թոյլ տուէք մեզ էլ ձեզ նման ազատ լինել, և մենք ամե֊նամեծ փառք և բարեբաստութիւն կ՚համարենք մեզ համար ձեզ հետ միութիւն պահպանելը։ Մենք միշտ պատրաստ կ՚լինինք զոհել յօգուտ պետութեան ամեն բան ինչ որ ունինք, ձեր թշնամուն իբրև մերը ճանաչել, ձեր շահերն իբրև մերը դիտել։ Բայց եթէ դուք կրաւունք տաք ձեր պաշտօնեաներին խաղալ մարդկային պատուի հետ և եթէ ոչ արդարութեան ձայնն, ոչ էլ օրէնքի պատուէրը, ոչ սահմանադրու֊թեան հիմունքն, ոչ էլ մարդասիրութեան զգացմունքը բաւական լինին յետ նահանջել ձեզ արիւնհեղութեան ճանապարհից,—այն ժա֊մամակ իմացած եղէք, որ մենք յաւիտեան չ՚պիտի նուաստանանք ծառայելու որ և է պաշտօնէի կամ ազգի հաճոյքներին»։

Ո՛չ ազգն ականջ դրաւ այդ խօսքերին, ո՛չ պաշտօնեաները, ո՛չ էլ Թագաւորը. ահա թէ խուլ էին ամենքն էլ։ Զո՛ւր եղան և Չաթամի — Անգլիայի այս ամենաերևելի պետական մարդու ջանքերն իւր հայրենիքն զգուշացնելու մասին, զո՛ւր և նրա ոգելից խօսքերն 'ի փառաբանութիւն ամերիկացւոց արդար դատին — լսող չ'կա՛ր։

«Եթէ դուք տեսնէիք Ամերիկայից մեզ մօտ եկած թերթերն և գրքերը», գոչում էր Չաթամ, «եթէ ի միտ առնէիք ընդհանուր ժողովի զգօնութիւնը, իմաստութիւնն և կարգը, — վստահ եմ որ չէիք յապաղիլ յարգել ամերիկացւոց իրաւունքն և պաշտպանել դրան ձերինի պէս։ Ես պարտական եմ խոստովանել իմ կողմից, որ հին աշխարհի ամենամեծ պետութիւնների մէջ անգամ չեմ ճանաչում մի ազգ կամ մի պետութիւն, որ այսպիսի դժուար հանգամանքների մէջ գտանուելով, առաւել վսեմութիւն ցոյց տաւած լինէր, քան թէ Ֆիլադելֆիա գումարուած ընդհանուր ժողովի ամերիկացի պատգամաւորները»։ «Ուրախութեամբ եմ տեսնում», ասում էր նա մի ուրիշ անգամ, «որ Ամերիկան մեզ ընդդիմանում է։ Պատճառ, եթէ երեք միլլիօն մեզ հաւասար մարդիկ ազատ կամքով յօժարութիւն տային ստրուկ դառնալու, նրանք մե՛զ էլ ստրը-

կութեան մէջ կաշկանդելու գործիք կ՚դառնա-
յին բռնակալի ձեռքում»:

Վաշինգթօն ոչ թէ միայն իւր նախըն-
թաց կեանքի համբաւով, հապա և իւր ժիր
գործունէութեամբ ընդհանուր ժողովի մէջ ազ-
գի տարապայման հաւատարմութիւնը գրաւեց:
Երբ Պատրիկ Հանրի անուն նշանաւոր սպատգա-
մաւորը տուն վերադառնալիս հարցմունք է
լսում, թէ արդեօք ո՞վ էր ընդհանուր ժողովի
անդամներից ամենաերևելին, նա պատասխա-
նում է. «Եթէ բանը պերճախօսութեան գայ,
ամենից գերազանցը Ռուտլէջն է. բայց եթէ
հիմնաւոր գիտութիւն և առողջ դատողութիւն
կ՚ուզէք, անտարակոյս Վաշինգթօն գնդապետն
է ամենամեծ մարդը ժողովի մէջ»:

Ամեն մի ամերիկացու համար մխիթարու-
թիւն էր այս դժուար պարագայների մէջ, որ Վա-
շինգթօն իւր դիւանագիտական քանքարի հետ
արդէն իւր ռազմական հանճարն էլ ցոյց էր
տուած:

---

Ը

## ԱՌԱՋԻՆ ՓՈՐՁ

Ապարդիւն եղաւ այն ամեն մարդիկների ջանքը, որոնք աշխատում էին արդարութեան և զգաստութեան հրաւէր կարդալ կառավարութեան և խորհրդարանին։ Մասսաչուզէթ նահանգը պատերազմական օրէնքի տակ դրուեցաւ և հրաման եղաւ փակելու ամերիկացւոց զինարանները, սկսելով նախ Բօստոնից։

Զայրացման մի աղաղակ էր, որ հնչեց այն ժամանակ երկրի մէջ. էլ տարակոյս չ'կար, որ բռնակալութիւնը միանգամայն ոտնհարել էր ուզում ամերիկացիներին։ Հայրենասէր անձինք հաւաքվում էին միասին և երդում էին տալիս՝ կեանքներն անգամ զոհելու երկրի իրաւունքների պաշտպանութեան համար։

Պատերազմը սկիզբն առաւ երկրորդ զինարանի յափշտակութեամբ Կօնկօրդում։ Ուժի գերազանցութիւնն անգլիացւոց կողմն էր, որովհետև նրանք թւով 800 էին, ամերիկացիք 80։ Անգլիացիք զինարանը դատարկելուց յետոյ ճանապարհ ընկան դէպի Բօստօն, բայց աղէտալի էր այս չուն։ Ամերիկացիք, օգնութիւն ստանալով, յարձակուեցան նրանց վրայ և այն ուժն հարիւրից դուցէ ոչ մին չէր կարա-

նալ Բոստոն ճողոպրել, եթէ անգլիական հրամանատարին ի դէպ ժամու մի հազար մարդ չ'առաքէր նրանց ազատելու համար։

Ամերիկացիք չ'կարացան փրկել Կոնկորդի համբարանոցը, սակայն վերջի վերջոյ ձեռք բերուած յաջողութիւնը մեծ եռանդ ազդեց նրանց, որովհետև մարտնչել էին մի ընտիր և վարժ գնդի դէմ, մինչդեռ ինքեանք, լոկ գիւղացիք և քաղաքացիք, դեռ վերի վերոյ զրահաւորուած անվարժ վաշտեր էին կազմում։ Այսու ամենայնիւ նրանք քաջ որսորդներ էին, լաւ գիտէին քարեր ընտրել, թումբեր գտնել, պատնէշ կանգնել և այս տեղից թշնամու վրայ հուր տեղալ— պատերազմի մի եղանակ, որ յետոյ բոլոր զօրքերի մէջ մուտք գտաւ։

«Ի սուր, ի զէն»։ Այս էր այժմ ամեն տեղ որոտացող ձայնը։ Ով որ սիրտ ունէր հայրենիքի պաշտպան կանգնելու, բռնակալութեան դէմ ատելութիւն զգալու, նա վերցնում էր պատի վրայից հրացանն և դաշոյնը և դառնում էր մի զինուոր։ Այս հասարակ մարդիկն համազգեստի տեղ շապիկ էին հագնում շորերի վրայից, ուստի և շապիկաւորք էին կոչվում. ունևորներն գալիս էին գլուխների վրայ կեղծ ծամ կրելով։

Անգլիական զինուորները դեռ փոքր ինչ առաջ հեգնում էին այս շապկաւոր և ծամաւոր

մարդիկներին, բայց Կոնկօրդից Բոստոն փախչելուց յետոյ հեղնութիւնը սուղ պարծաւ։

Ամերիկացիք ամեն գիւղերից և քաղաքներից արշաւում էին դէպի Բոստոն, որ թշնամու ձեռքին էր. քիչ ժամանակից յետոյ արդէն 15,000 ամերիկացիք պաշարում էին դրան ցամաքի կողմից։ Պաշարողների առաջին նպատակն էր գիտել թշնամուն և թոյլ չ'տալ նրան ներս մտնելու երկրի մէջ։ Դժուար էր քաղաքի բնակիչների վիճակը, որովհետև նրանք, թշնամու ձեռքի տակ ճնշուած, շարժիլ անգամ չէին կարող։ Անգլիացւոց Գէջ զօրավարը վախենալով որ նրանք դուցէ կ'ապստամբէին, խոստացել էր արձակել նրանց քաղաքից, եթէ նրանք զէնքերը յետ թողնելու լինէին. քաղաքացիք զէնքերը տուին, բայց Գէջ իր խօսքը կոտրեց և պահեց նրանց իբրև պատանդ։

Մի օր յանկարծ անգլիական նաւեր մտան Նաւահանգիստ. սրանք բերին 4,000 զինուոր հօու զօրապետի վարչութեամբ, մի յախորտամիտ մարդու, որ այն կարծիքի էր, թէ իսկոյն պիտի կարանար զոյգ զոյգ կապել և գերի վարել ամերիկացիներին։ Այս մարդուն էր յանձնուած անգլիական զօրքերի հրամանատարութիւնն Ամերիկայի մէջ։ Անգլիացւոց Կոնկօրդից յետ մղուելու չարագոյժ լուրն երևի թէ փոքր

ինչ խախտել էր նրա վստահութիւնը, պատճառ որ նա չ՚յանդգնեցաւ խսկոյն յարձակուել մօտակայ ամերիկացիների վրայ, ինչպէս որ վայել էր իւր զօրութեանը: Սրան հակառակ, առաջին շարժումն ամերիկացիք արին և մի գիշերուայ մէջ քաղաքի մօտ պատնէշ պատեցին: Այս պատնէշներն առնելու համար Հօու բոլոր իւր գնդերն թշնամու վրայ արձակեց: Երկու կողմերն էլ ամենամեծ արիութեամբ կռուեցան. անգլիացիք արդէն երկու անգամ յետ էին մղուած ամերիկացի հրացանակիրներից և սրանք յաջորդ յարձակումն էլ յաղթանակով յետ կ՚վանէին անշուշտ, եթէ պաշարները չ՚սպառուէին: Այսպէս ուրեմն միայն երրորդ ընդհարումից յետոյ տեղի տուին քաջերը. սրանք նահանջեցան անշփոթ կարգով. թշնամին էլ այնպէս պարտասուել էր, որ էլ չ՚կարացաւ հալածել նրանց:

Յաղթանակն անգլիացիք տարին. սակայն ինչպէս քաջ մարտնչեցան ազատութեան նորընտիր զինուորները հմուտ զօրապետներից առաջնորդուած կիրթ և կազմ գնդերի դէմ: Նրանց կորուստը միայն 453 մարդ էր, անգլիացիներինը 1,054: «Այսպիսի դժնդակ արեան նախճիրք այսպիսի կարճ միջոցին երբէք չէի լսած», գոչեց Հօու:

Այս էր Բունքր Հիլլի ճակատամարտը, որի

ամերիկացի ախոյեանները լիովին արժանի էին վերջերում նոյն իսկ տեղի վրայ նրանց յիշատակի համար կանգնուած պատուի կոթողին։ Այժմ բոլորն էլ զգացին, որ այսպիսի ոգով ներշնչուած զինուորները վաղ թէ ուշ պիտի յաջողէին հայրենիքի անկախութիւնը ձեռք բերելու։ «Երկրի ազատութիւնն ապահոված է», գոչեց Վաշինգթօն ճակատամարտի լուրն առնելիս։ Պատնէշներն անգլիացիների ձեռքն անցան, բայց նրանք դեռ չէին ազատուած պաշարումից։

---

Թ

## ՎԱՇԻՆԳԹՕՆԻ ՍՊԱՐԱՊԵՏ ԸՆՏՐՈՒԻԼԸ

Գաղթականութիւնների ընդհանուր ժողովը Մայիսի 10-ին 1775 ամի դարձեալ մի անգամ գումարուեցաւ բոլոր նահանգների պաշտպանութեան մասին խորհելու համար։ Այս բանի մէջ ամենից շատ գործողն էր Վաշինգթօն, որ և նախագահում էր զինուորական պէտքերին դարման գտնելու կոչուած մասնաժողովում։

Իբերի վիճակը տեխլում էր ընտրել մի

հրամանատար։ Փողովի անդամներից ոմանք արդէն բրիտանական զօրքի մէջ իբրև սպաներ ծառայած լինելով, ազատ չէին հրամանատար ընտրուելու Թագուհու յոյսերից. կային և այնպիսիք, որոնք յայտնապէս Թեկնածում էին այդ բարձր պաշտօնին. սակայն Վաշինգթօն խորշելով խորշում էր մի որ և է մարդու վրայ յօգուտ իւր ճնշումն գործելուց։

Վերջապէս Մայիսի 15 քուէարկութեան ձեռնարկեցին և քուէները համրելիս յայտնի եղաւ, որ Վաշինգթօն ընտրուած էր ձայների միութեամբ, ի բաց առեալ միայն իւր քուէն։ Նա շնորհակալութիւն յայտնեց ժողովին այս հաւատարմութեան համար, ուխտեց անձնուիրութեամբ ծառայել հայրենի երկրին, սակայն այս էլ աւելացրեց, որ հրամանատարի պաշտօնն իւր ուժերից վեր էր։

«Եթէ չար բախտն իմ ջանքերս ի դերև հանելու լինի, կ՚խնդրեմ այս սրահի մէջ բազմած ակումբից ի միտ բերել իմ այս անպատրուակ և պարզ խոստովանութիւնը, որ ես հաւսուն չեմ հրամանատարութեան պաշտօնի համար, որով դուք պատւում էք ինձ»։

Նա ընդունեց այս ընտրութիւնն իբրև նախախնամութեան մի հրաւէր, որին չ՚հնազանդիլը մեղք էր համարում. Նա պատրաստ էր

ի գործ դնել իւր բոլոր ուժերը, յուսալով, որ Աստուած էլ չէր թողնիլ նրան առանց իւր օգնութեան: Վաշինգթօն այս պաշտօնն յանձն առնելով մի մեծ զոհաբերութիւն էր անում իւր ազգին, որովհետև նա փառասէր չէր և ակներև տեսնում էր այն խնդրի ծանրութիւնը, որի լուծումն իրենից էին սպասում: Նրա սրտի յօժարութիւնները ձգում էին նրան դէպի անդորր ընտանեկան կեանքի վայելքները, դէպի արտն և այգին. բայց ահա յանկարծ նա պիտի ղեկավար կանգնէր մի ռազմական շարժման, որն որ, ինչպէս նա ինքն էլ քաջ գիտէր, ամենայաջող դիպուածումն անգամ երկար ժամանակով անջատելու էր նրան և' ընտանիքից և' ծննդեան տեղից: Սակայն և այնպէս նա չէ տխրում, չէ տրտնջում. Նրա արիական հոգու մէջ գերիշխող զգացմունքը բարեպաշտութեան և պարտքերի ճանաչման զգացմունքը լինելով, նա միայն մեղմիւ՝ անձնատուր է լինում տխուր մտքերի: Անմիջապէս ընտրութիւնից յետոյ նա գրում էր իւր սիրելի ամուսնուն.

«Կարող ես հաւատալ ինձ, թէ ասեմ քեզ ամենահանդիսաբար, որ ես չէի հետամտած այս ընտրութեան և միշտ էլ աշխատած էի խորշիլ դրանից ոչ թէ միայն քեզնից բաժանուիլ չ'կամենալուս համար, հապա և այն պատճառով,

որ պաշտօնն իմ ձեռնհասութիւնից շատ և շատ վեր է։ Քեզ մօտ մնալով ես մի ամսուայ մէջ առաւել երջանկութիւն կ'վայելէի անշուշտ, քան որ կարելի էր գտնել երբ և իցէ արտաքոյ մեր տան»։ — «Յոյս դնում եմ Նախախնամութեան վրայ, որ պահպանել է ինձ մինչև այս օրս, և չեմ կասկածում, որ աշնան ողջ և առողջ կ'վերադառնամ քեզ մօտ։ Արշաւանքի տառապանքներն և վտանգները բնաւ վշտացնելու չեն ինձ. իմ վշտիս միակ պատճառն այն մտածմունքը կ'լինի, որ դու անշուշտ պիտի մորմոքուիս և մաշուիս միայնութեանդ մէջ։ Ուստի աղաչում եմ քեզ — ամուր կաց և զուարթ սրտով անցուր ժամանակդ։ Ոչինչ բան այնքան սփոփանք չի շնորհիլ ինձ, ինչքան որ այն նամակներն, որոնցով դու կ'հաղորդես ինձ, թէ ինչպէս ես պահում քեզ»։ — Մի բարեկամի էլ հետևեալն էր գրում. «Հայրենիքի գործը մի դժուար և վտանգաւոր պարտաւորութիւն է դնում իմ վրայ. սակայն յուսով եմ, որ իւր արարածներին խնամութեամբ խնամող վերին Տէրութիւնը ինձ էլ զօրութիւն կ'տայ կատարելու դրան ճշտիւ և յաջողութեամբ»։

Վաշինգթօն հինգ հարիւր դոլլար ամսական պիտի ստանար հրամանատարութեան պաշտօնի համար. բայց նա մերժեց այս թոշակն,

ինչպէս և ուրիշ վարձատրութիւններին, ասելով, թէ նա յետոյ հաշիւ կ'ներկայացնէ հասարակային պաշտօնավարութեան մէջ անելիք ծախքերի մասին և եթէ այն ժամանակ բարեհաճին փոխարինել այս ծախքերը, նա առաւել ոչինչ չիպիտի ցանկայ։ Ջօն Ադամս ականաւոր երեսփոխանը գրում էր մի բարեկամի.

«Ըստ իս մի թովչական բան կայ Վաշինգթօնի բնաւորութեան մէջ. նա մեր երկրի ամենահարուստ ազնուականներից մինն է. բայց և այնպէս նա թողնում է իւր քաղցրիկ մենութիւնը, իւր ընտանիքն, բարեկամներին և իւր հանգիստը, այս բոլորն վտանգի ենթարկելով ի սէր հայրենեաց»։

Վաշինգթօնին պաշտօնի կոչող հրովարտակի մէջ, որ մատուցին նրան Յունիսի 20-ին, մի առ մի յիշատակուած էին գովասանքով նրա հայրենասիրութիւնն և ամեն հանգամանքների մէջ վկայած ազնուութիւնը, նրա քաջութիւնն և հաւատարմութիւնը, մանաւանդ և մաքուր բարքը։

Նրա ի դաշտ չուելու օրն արդէն մերձ էր և ամեն մարդ, որ դեռ չէր տեսած նրան, շտապում էր գէթ մի անգամ տեսնել նրան մօտեկից։ Վաշինգթօն, սպաների խնդրին զիջանելով, հրամայեց մի զօրահանդէս կազմել իւր

առջև։ Բոլոր աշխարհ զմայլում էր նրա տեսքից։

«Դժուար է ենթադրել», ասում է Վաշինգթօն Իրվինգ, «որ ժողովրդի գաղափարը մի սպարապետի մասին իրեն առաւել պատշաճող խսկութիւն գտած լինէր երբ և իցէ։ Այժմ Վաշինգթօն իւր արիական ուժերը լիովին ծաւալած քառասուն երեք տարեկան մի մարդ էր, անձնեայ և թիկնաւէտ, ազնիւ ձևերով, հանդարտ և պատկառելի շարժմունքով։ Ամենքը սքանչանում էին նրան կորովի քաջութեամբ նժոյգ նստած տեսնելիս և ուր տեղ էլ երևէր, միայն գովեստ էր, որ թնդում էր օդի մէջ»։

Ջօն Ադամսի շնորհալի կինն էլ հետևեալն էր գրում սպարապետի մասին.

«Վաշինգթօնի մէջ երևում է քաջազարմ մարդու և հասարակ զօրականի, ակնածելի ծանրութեան և համակրելի զուարթութեան մի սիրուն խառնուրդ, որի նմանն ես իմ օրումս չեմ տեսած։ Նրա ազնիւ և արդարև վսեմ պատկերի ամեն մի գծից համեստութիւն է փայլում»։

Ժ

## ՎԱՇԻՆԳԹՕՆ ԲՕՍՏՕՆԻ ԱՌՋԵՒ

Այս վճռական րոպէին ընդհանուր ժողովը նորից փորձուեց ամոքել Թագաւորի սիրտը մի աղերսագրով, որի մէջ ասուած էր. «Թոյլտուութիւն ենք հայցում հաւատարմացնելու Ձեզ, ով արքայ, որ չ'նայելով արդի երկպառակութեան մէջ մեր կրած վշտերին, մեր սրտերն այժմս էլ դեռ այնքան լի են ակնածութեամբ դէպի մեր սիրելի մայր երկիրն և սրա պետութիւնը, որ մենք բնաւ չէինք կամենալ դրանց բարօրութեան և պատուին հակառակ մի քայլ գործել»:

Ուրեմն դարձեալ մի անգամ առիթ էր տրվում պետութեան՝ հաշտ միջոցներ ընտրելու. բայց նա մերժեց այս առիթն և Լօնդօնի մէջ ուշադրութիւն անգամ չընծայեցին ժողովի գրութեան: Այն տեղ մտածում էին հօու զօրապետի սուիններով պատասխան տալ գաղթականներին և չէին տարակուսում, որ նա շուտով ոտնակոխ կ'անէր ամերիկացւոց ապստամբութիւնը, ինչպէս որ սովոր էին անուանել Լօնդօնում նրանց իրաւացի ընդդիմութիւնը:

Մինչ այս մինչ այն՝ Վաշինգթօն գնաց

բանակ դրաւ Բոստոնի առջև: Ամերիկացի դնդապետներից մին այսպէս է նկարագրում այդ բանակը.

«Վրանները տարբեր են իրարուց, ինչպէս որ տարբեր են և դրանց տէրերն իրենց հագուստով, և իւրաքանչիւրն իւր բնակաւորի բարք ու ճաշակի պատկերն է ներկայացնում: Այս վրաններից մի քանիսն տախտակից են շինուած, միւսներն առագաստից, դարձեալ միւսներն թէ այս, թէ այն նիւթից. կան և այնպիսիք, որոնք կամ քարից, ցախարից, աղիւսից և ոստերից են կազմուած, կամ երկրի մէջ են փորուած և կամ վերջապէս ճարտար կերպով պատառատուկ բաղեղից հիւսուած»:

Վաշինգթօն ի տրտմութիւն իւր չգտաւ այն, ինչ որ յոյս ունէր գտնելու. ամերիկացւոց զօրքը 20,000 չէր, ինչպէս որ որոշուած էր առաջ, այլ 16,000, այս թուից էլ զինուորական ծառայութեան ընդունակ էին միայն 14,000 մարդիկ: Վաշինգթօն գտաւ քաջ մարդիկ, բայց ոչ թէ մի միաձոյլ զօրք. Նրա ձեռքի տակ գտանուող մեծ և փոքր վաշտերը թէ զէնքով տարբեր էին իրարուց, թէ վարչութեամբ. ոչ թնդանօթներ կային բանակի մէջ, ոչ էլ անհրաժեշտ պատերազմական կարգեր:

Վաշինգթօնին զբաղեցնող առաջին խըն-

գլխին էր—մի միատարազ զօրք կազմել այս խառնիճաղանճ բազմութիւնից,—մի խնդիր, որի լուծման չափազանց դժուարութիւնը նա ինքն էլ լաւ գիտէր։ Ընտիր ընտիր քաջեր էին նրան յանձնուած անտառաբնակ մարդիկն, սակայն ինչ օգուտ, երբ նրանք, անկախութեան սիրով վառուած, որ և է զինուորական կարգի ոխերիմ թշնամի էին։ Մի քանի օրուայ, մի քանի շաբաթուայ մէջ կատարելու բան չէր այս խընդիրը. մինչդեռ քաղաքում կանգնած էին ամեն պաշարներով առատ օժտուած 11,000 քաջավարժ և սպառազէն զինուորներ։

Այսպէս ուրեմն հենց բանակ մտնելու առաջին օրից լիարուռն գործ դրաւ Վաշինգթօն. առաւել այս տեղ օգնեց նրան իւր մանկութեան սովորութիւնը—ամեն մի բան կանոնաւոր կերպիւ, որոշեալ ժամին անելու, իւր բոլոր ջանքը գործին նուիրելու և անընդհատ ուշադրութեամբ դրան հետեւելու պատուական սովորութիւնը։ Ինչպիսի աշխատութիւն, ինչ ոյժ, որքա՜ն համբերութիւն, կամքի հաստատութիւն և տոկ պէտք էր նրան բանակի մէջ մի այնպիսի ոգի յարուցանելու համար, առանց որի ոչ մի զօրք կարող չէ մի տեւական յաջողութիւն գտնել դաշտի վրայ։

Վերոյիշեալ պարագաների մէջ նրան ոչինչ

չէր մնում անել, բայց թէ հետևիլ Փաբիոս յապաղկոտի պատերազմական օրինակին: Տարին անցաւ առանց ո՛ր և է շարժողութեան այս կամ այն կողմից: Դեկտեմբեր ամսին ամերիկացի գնդերի մի մասը, որ միայն ներկայ տարուայ ծառայութեան համար էր կոչուած, կամեցաւ վերադառնալ դէպի տուն. մարդիկ իրաւունք ունէին — և Վաշինգթօն թողաւ որ գնան: Բոստոնի առընթեր բանակի մէջ մնաց միայն 10,000 մարդ, չնայելով որ նոյն միջոցին անգլիական զօրքը նոր օժանդակ փաշտեր էր ստացել Անգլիայից:

Երկրի հայրենասէրները մի գաղափար անգամ չունէին այն անթիւ խոչընդոտների մասին, որոնց դէմ ստիպուած էր մաքառել Վաշինգթօն. շատերը կարծում էին, թէ նրա սպարապետութեան հենց առաջին օրերին յաղթութեան աւետիք կ'բերէին լրագիրք. բայց ահա տարին անցաւ, և դեռ ոչ մի դէպք չէր պատահած: Իրերի վիճակը պարզելու համար յառաջ բերենք Վաշինգթօնի երկու նամակները յանուն Րիդ գնդապետի:

«Շատ կ'ուզէի իմանալ», ասում է նա առաջին նամակում, «թէ ամբողջ պատմութեան մէջ եղա՞ծ է արդեօք մերինի նման մի օրինակ, ուր ահա շարունակ վեց ամիս առանց

վառօդի հաստատուն ենք պահում մեր կայանը բրիտանական գնդերի զօրութեան դէմ և ուր մեզ պէտք է լինում լուծել մեր բանակն և նորից վերակազմել սրան նոյն իսկ թշնամու դէմ յանդիման։ Ի՞նչ ելք կ՚ունենայ այսպիսի մի կացութիւն—աստուած գիտի. իսկ այժմուս ես կ՚ուզէի գէթ մի ամսով աւելի ծեր լինել»։

Երկրորդ նամակը գրուած է յաջորդ թուականի (1776) փետրուար ամսին։

«Ես ինքս ուրիշներից լաւ գիտեմ այն ողորմ դրութիւնն, որի մէջ որ գտնւում եմ», գրում է նա. «գիտեմ այն բոլորը, ինչ որ պահանջում են ինձնից. սակայն գիտեմ նոյնպէս, որ առանց գինուորի, առանց զէնքի, առանց պաշարեղէնի—առանց այն ամեն իրերի, որոնք անհրաժեշտ են զօրականին—կարելի չէ ոչ մի բան յառաջ տանել։ Սակայն բոլորից աւելի ինձ տագնապ պատճառող հանգամանքն այս է, որ ես հնար չ՚ունիմ արդարացնել ինձ աշխարհի առջև առանց մեր թերութիւնները յերևան հանելու և մեր գործին վնասելու։ Ուստի ես վճռած եմ իմ պէտքերն և կարիքը յայտնելիս միայն այնչափ յայտնել, որչափ որ ստիպուած լինիմ յայտնելու անհրաժեշտ հարկից։ Իմ վիճակս երբեմն այն աստիճանի դառն է լինում, որ եթէ ես հան-

րային շահն աւելի քիչ յարգէի, քան թէ անձնական հանգիստը, վաղուց արդէն թողած կ՚լինէի ամեն բան: Փոխանակ 20,000 այրընտիր զինուորի, ես այս թուի կէսից պակաս մարդ ունիմ ձեռքիս տակ, որոնց մէջ հաշւում եմ և այնպիսիներին, որոնք կամ արձակուրդ են առած, կամ գործի են առաքուած, կամ հիւանդ են և կամ անզէն: Դրութիւնս այնպէս վատ է, որ ես ստիպւում եմ արուեստական միջոցների դիմել դրան սպաների աչքից թաքցնելու համար»:

Բայց և այնպէս Վաշինգթօն անխոնջ տըքնում էր բանակի բարեկարգութեան վրայ, որա թէ արտաքին և թէ ներքին, թէ նիւթական և թէ բարոյական վերաշինութեան վրայ: Նրա գնդերի մէջ պակաս չէին այնպիսի գարշ և զազիր էակներ, որոնք միայն գայթակղութիւն էին զօրականին. ուստի նա հետևեալ օրական պատուէրն արձակեց.

«Այս ընդհանուր նեղութեան ժամանակ փոխարէն շուայտութեան հետամուտ լինելու, ամեն մարդ կարող է բաւական զբաղմունք գըտնել Աստուծոյ և հայրենեաց ծառայելու համար: Մեր գործը, որի համար մարտնչում ենք, առաքինութեան և մարդկութեան մի գործ է. մեր ջանքից է կախուած մեր սերունդների ժառան-

գուլժիւնն, և այս ժառանգուժիւնը կամ ազատուժիւն կ'լինի կամ ստրկուժիւն։ Միժէ մի քաջ տղամարդու համար որանից էլ զօրաւոր շարժառիժ կարող է լինել ազնուուժեան ժևակոխելու։ Արդ, ժող յայտնի լինի գնդերին — ով որ յանդգնի յետ մնալ կռուից, տեղի տալ ժշնամուն, ժաքչիլ և կամ դասալիք լինել — նոյն ժամայն գլխապատ պիտի սպանուի այս տեսակ անարգ վատուժեան համար՝ յօրինակ ուրիշների. պատճառ վատարիք կարող են ամենավարժ զօրքի մէջ անգամ շփոժմունք ձգել իրենց խայտառակ վեհերոտուժեամբ»։

Այս հրովարտակից շատերը հետևեցրին, ժէ Վաշինգժօն վերջապէս ի դէպ էր համարում մի հարուած տալ ժշնամուն, և իրաւ այսպէս էր։ Նա մտադիր էր գրաւել քաղաքին մերձակայ Տօրչեսժրի բարձունքը. ուստի ժշնամու աչքը խաբելու համար նա Մարտի 3-ին գիշերուայ դէմ հրամայեց ուժգին ռմբակոծել քաղաքը, և մինչդեռ անգլիացիք շփոժման մէջ էին, Վաշինգժօնի գնդերը բարձունքն առին և ամրացրին։ Այս ամրացման գործը նրանք այնպէս արագ կատարեցին, որ Հօու զօրապետը լուսու դէմ բլուրների վրայ նայելիս չ'կարացաւ ճանչել իւր աչքերին և գոչեց հիացմամբ. «Ապստամբները մի գիշերուայ մէջ առաւել գործ են տե-

սել, քան թէ կարող էր ամբողջ ամսում յառաջ բերել մեր բանակը»։

Վաշինգթօն այժմ թշնամու ամենաթունդ յարձակման դէմ պատրաստ կենալով, սպասում էր թէ վերատին Բունքր Հիլլի ճակատալտի պէս մի կռիւ տեղի կ՚ունենար։ Սակայն յաջորդ օրերի անձրեւն և փոթորիկը թոյլ չըտուին անգլիացի զօրավարին յարձակման ձեռնարկելու։ Եւ երբ փոթորկից յետոյ հօս նորից ի նկատի առաւ թշնամու աՀեղ պատնէշներին, Հ՚լ անՀնարին համարեց գրոհ տալ նրանց դէմ և սրտի դառնութիւնից քաղաքը թողնելով, նաւ մտաւ զօրքի հետ, իսկ Վաշինգթօն՝ Բօստօն։

Այս դէպքի լուրն ամենամեծ բերկրութիւն պատճառեց երկրին։ Ընդհանուր ժողովը սահմանեց Վաշինգթօնի պատկերով ոսկի շքադրամ կտրել Բօստօնի ազատութեան յիշատակի համար։ Իսկ ինքն Վաշինգթօն խոնարհ սրտով գոհութիւն էր մատուցանում Աստուծոյ և սփոփվում էր այս մտքով, թէ նոր դէպքը մի նոր աշխոյժ կ՚ազդէր հայրենասէր սրտերին։ Իրեն նուիրած մեծարանքներից նա յօժար էր բոլորովին զերծ մնալ, քանի որ ամենից լաւ էր տեսնում, թէ կատարեալ ազատութեան տանող փշոտ ճանապարհը դեռ երկար պիտի տեւէր։

---

## ԺԱ.

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Երբ ամերիկացիք պարզ տեսան, որ իրենց բոլոր խնդիրներին և արդար պահանջներն ապարդիւն էին մնում, հասած համարեցին այն ժամն, երբ պէտք էր վերջապէս յայտնել ի լուր բոլոր աշխարհի, թէ նրանք ազատ են ամեն պարտաւորութիւններից դէպի Անգլիան և կամենում են մի ջոկ պետութիւն հաստատել իրենց համար:

Շատ խորհրդաւոր էր այն ժամն, երբ 4-ին Յուլիսի 1776 թ. ընդհանուր ժողովի տան առջև գումարուած ժողովրդին աւետեցին, թէ Ամերիկայի բոլոր տասներեք նահանգներն էլ միաբան յօժար են անկախութեան, և երբ հանդիսաբար հնչեց զանգակը, որի վերնագիրն էր— «Ազատութիւն ամբողջ երկրին և սրա ամեն բնակիչներին»:

Այս զանգակի բարբառին արձագանգ տուին մերձաւոր զանգակներն. հեռաւորները նրանց զօղանջիւնը կրկնեցին և այսպէս նրանց ձայնը գիւղէ գիւղ և քաղաքէ քաղաք թնդալով, ազդարաւ նոյն օրուայ նշանաւոր խորհրդին նախա-

ծանօթ միլլիօնաւոր բազմութեան, թէ մայր երկրից բոլորովին և առ միշտ դատուելու դըժուար քայլն արդէն արուած էր...

Ժողովուրդն ամեն տեղ շտապեց տօնական հանդէսներով համակրութիւն յայտնել այս պետական մեծ գործին:

Գէորգիա նահանգի բնակիչները մի մեռելահանդէս կազմեցին խորհրդարանի առջև և Գէորգ Գ թագաւորի պատկերը թաղեցին: Մի մարդ դուրս եկաւ դամբանական խօսելու գերեզմանի վրայ և ասաց. «Գէորգ թագաւորն անամօթ կերպիւ սուտ հանեց դաշնակցութեան երդումն և տապալեց մեր երկրի սահմանադրութիւնն և մարդկային սուրբ ազատութիւնը. վասնորոյ գերեզման ենք իջեցնում նրա քաղաքական գոյութիւնը — ապականութեան ենք մատնում, ինչ որ ապականուած էր — այս հաստատ և անսուտ յուսով, որ նա էլ երբէք, ոչ մի ժամանակ և յաւիտեան չիպիտի վէր կենայ կրկին իշխելու մեր ազատ և անկախ նահանգների վրայ»:

Եւրոպայի բոլոր ազատամիտ մարդիկն համակրութեամբ էին նայում ովկիանոսի միւս կողմը կատարուող դէպքերին. իսկ վեհերոտներն երկընչում էին, թէ ամերիկացւոց օրինակն ամեն տեղ մի փոթորիկ կ՚յարուցանէր միապետութիւնների

դէմ։ Սակայն միթէ ամերիկացիք չէ՞ին, որ համբերութեան օրինակն էլ ցոյց տուին, նրանք չէ՞ին, որ անձնուէր հպատակութեամբ միապետական ձևը պահպանելու ջանացին։ Ի՞նչ էին խնդրում նրանք Գէորգ Գ Թագաւորից—սուրբ պահել երկրի օրէնքը. օրէնքը՝ ինչպէս որ ամեն պետական կեանքի, այնպէս էլ ինքնակալութեան հիմքն է։ Սակայն ով որ չէ ուզում իսպառ ապտակ դարձնել ճշմարտութեան երեսին, նա պարտական է խոստովանել, որ Գէորգ Թագաւորն և նրա պաշտօնեաներն էին, որ կտրեցին Ամերիկի նահանգներին Անգլիայի հետ շաղկապող զօդերը, և ոչ թէ գաղթականք. պատճառ սրանք միայն այն ժամանակ անկախ պետութիւն հրաչակեցին իրենց երկրին, երբ նրանց բոլոր ազնիւ ճիգերին օրէնքի յարգը վերականգնելու մասին ի չիք դարձան Անգլիայի կամակորութեան բախուելով, երբ հաշտութեան ասպարէզի վրայ կայուն օրինապահութեան հացի փոխարէն, որին նրանք կարօտ էին, բռնակալութեան քար տուին նրանց և նրանց արդար աղերսի դէմ՝ կապարով և վառօդով պատասխանեցին։

Անկախութեան յայտարարութիւնը թէ ձեւով և թէ՛ բովանդակութեամբ մի գեղեցիկ գրուածք է։ Ամերիկացիք ոչ թէ չեն յորդորում իրենց օրինակին հետևել, այլ դեռ խորհուրդ

են տալիս «չ՚փոխել հին կառավարութիւնները վաղանցուկ և թեթև պատճառներով»։ Յետոյ, յիշելով պետական կեանքի բուն նպատակները, նրանք աշխատում են արդարացնել իրենց քայլն բոլոր աշխարհի առաջև։

«Մեծ Բրիտանիայի այժմեայ թագաւորի պատմութիւնը», ասուած է ազատութեան հրովարտակի մէջ, «պատմութիւն է անընդհատ անիրաւութիւնների և յանդուգն պահանջների, որոնք բոլորը միասին գործվում էին մեր նահանգների վրայ բռնակալութեան լուծ դնելու նպատակով. իբրև սրան ապացոյց՝ թող ներուի մեզ հետևեալ իրողութիւններն յերևան հանել բոլոր աշխարհիս ազնիւ մարդիկների դիտութեան համար.

«Նա միաբանուեցաւ միւսների հետ՝ մեր սահմանադրութեան օտար և մեր օրէնքներին անյայտ դատարանների ենթարկել մեզ. նա հաւանութիւն տուաւ այն ապօրինի վճիռներին, որով կամենում էին առանց մեր համաձայնութեան հարկեր դնել մեր վրայ, զրկել մեզ երդուեալների դատաստանի օգուտներից, տարագրել մեզ ովկիանոսի միւս կողմը, պատժել մեզ ստայօդ յանցանքների համար, վերցնել նահանգների միջից ազատ սահմանադրութիւնն, անձնիշխան բռնութիւն հաստատել այս տեղ. ընա-

ջինջ անել մեր ազատութեան թղթերը, տապալել մեր իրաւունքները, հիմն ի վեր ազաւաղել մեր վարչութեան ատեանները, բառնալ մեր յատուկ օրէնսդրական ժողովներն և անձամբ անձին օրէնքներ դնել մեր գլխին։

«Զրկելով մեզ օրէնքի պաշտպանութիւնից և պատերազմ յայտնելով մեր երկրին, նա հրաժարուեցաւ այս տեղ կառավարելու և իշխելու իրաւունքից։

«Նա կողոպտեց մեր ծովերը, ամայի արաւ ծովափները, այրեց և մոխիր դարձրեց մեր քաղաքները, կործանեց մեր քաղաքացիների կեանքը։

«Վարձկան զօրքեր գումարեց նա՝ մեր վրայ մահ, կորուստ, թշուառութիւն և բռնութիւն տարածելու համար։

«Մեր քաղաքացիներին արձակ ծովի վրայ բռնելով, ստիպեց նրանց, որ հայրենիքի դէմ զէնք վերցնեն, իրենց եղբայրների դահիճը դառնան և կամ սրանց ձեռքից մեռնեն։

«Ներքին աղմուկ բորբոքեց մեր մէջ և մեր վրայ վայրագ հնդիկների գումարտակներ արձակեց. որոնց ռազմական սովորութիւնն է՝ կործանել ամեն բան և ամենքին, առանց խտրութեան հասակի, սեռի և կարգի։

«Այս ամեն մի բռնաբարութիւնից յետոյ

մենք ամենախոնարհ աղերսանքով օգնութիւն խնդրեցինք, բայց մեր ամեն պաղատանքներն անխրատութեամբ մերժուեցան։

«Մի իշխան, որի ամեն մի գործն բռնակալութեան նշան է, արժանի չէ իշխելու մի ազատ ազգի վրայ։

«Մեր բրիտանացի եղբայրներին էլ անթախանձ չ'թողինք մենք. սակայն նրանց ականջն էլ փակ գտանք արդարութեան և արեան ձայնի համար։

«Այս պատճառով մենք ակամայ ստիպվում ենք հերձման տանող ճանապարհի վրայ ոտք դնել և ասել, որ մենք նրանց, ինչպէս և ամեն ուրիշներին, ընկեր ենք ճանաչում խաղաղութեան մէջ և թշնամի—պատերազմի մէջ։

«Վասնորոյ մենք Ամերիկայի Միացեալ Նահանգների պատգամաւորներս, ընդհանուր ժողովի մէջ գումարուած, տիեզերքի գերագոյն դատաւորին մեր խորհուրդների մաքրութեան վկայ կոչելով, գաղթական ժողովուրդների անուամբ և իրաւամբ հանդիսաբար յայտարարում ենք, որ մեր միացեալ գաղութներն այսուհետև անկախ և ազատ պետութիւններ են, որ սրանք Բրիտանիայի գահին հպատակելու պարտքից զերծ են, և որ վերջապէս սրանց քաղաքական կապը մեծ Բրիտանիայի տէրութեան հետ ամե-

նէրն լուծուած է, լուծուած էլ պիտի մնայ: Եւ ի հաստատութիւն այս յայտարարութեան, մենք Աստուածային նախախնամութեան ապաւինելով, փոխադարձ երաշխաւորութեամբ դրաւ ենք դնում միմեանց մեր կեանքը, մեր գոյքը, մեր սրբազան պատիւը»:

Այս ազատութեան յայտարարութիւնն և ժողովի բոլոր վարմունքն հիացումն ազդեց Եւրոպայի լուսաւորուած մտքերին. հիացան մինչև անգամ և այնպիսի մարդիկ, որոնք իշխանութեան գահի վրայ էին բազմած և անաչառ սրտով էին դիտում գործերի ընթացքը: Յիշենք, օրինակի համար, Ֆրիդրիխս մեծին, որ արդէն ինքն էլ մի գրքի *) մէջ յայտնած էր այնպիսի մտքեր, որոնք յար և նման էին Ամերիկայի անտառների միջից քարոզուող մտքերին:

---

*) «Դիտողութիւնք Եւրոպայի քաղաքական մարմինների դրութեան մասին»: Փ. Վ.:

ԺԲ

## ԾԱՆՐ ԺԱՄԱՆԱԿՆԵՐ

Արդէն պարզուած էր աստղադրօշը, որի վրայ, ի նշան Ամերիկայի տասներեք նահանգների միութեան, փայլում էին տասներեք աստղեր. այժմ մնում էր կամ յաղթանակ կանգնել այս դրօշով կամ պատուով մեռնել սրա տակ:

Արդէն շատ բան արուած էր, բայց դեռ անելու էլ շատ բան կար:

Անգլիան հաւաքել էր իր բոլոր ուժերն երևակայած ապստամբներին սպառսպուռ ջարդելու համար և նոր նոր գունդեր առաքեց Հօու զօրավարին, ինչպէս և նոր գերմանական գինուորներ, որոնք արծաթի գնով էին գնուած ամերիկացւոց դէմ դահճի պաշտօն կատարելու համար:

Գերմանիայի հպատակներին վաճառելու վատթար սովորութիւնը յերևան է գալիս գերմանական փոքր իշխանների տիրապետութեան միջոցին: Այսպիսի վաճառահանութեան մասնակից էին Հէսսէնի, Բայրօյթ-Անսպաքի, Բրաունշվէյգի և Անհալթ-Ցէրբստի իշխանները. սակայն ամենից շատ մարդ վաճառողն էր Հէսսէնինը, որի

անունով և վաճառուած գերմանացիք Հէսսէն էին կոչվում Ամերիկայի մէջ։ Ով որ այս անադորոյն իշխանի դքսութեան մէջ փորձ փորձէր վտանգից փախչելու և նրա սպասնեակների ձեռքն ընկնէր, նրան խիկոյն շղթայում էին. իսկ եթէ շղթայուածի ազգականները մի տըրտունջ յայտնէին, սրանք էլ կաշկանդուելով բանտարկվում էին։ Կասսէլ քաղաքի հրապարակի վրայ անգլիական գործակալները փողով էին գնում Հէսսէնցի բնակիչներին, և ամեն մէկի գինն էր հարիւր թալէր կամ չորս հարիւր ֆրանկ։ Ֆրիդրիկոս մեծը դառնութեամբ նշաւակում էր այդ մարդորսներին. «Թող այդ հայրենիաց հայրերն չ՚մոռանան նա և գլխատի մաքս պահանջել հպատակներից», ասում էր նա։—«Ոչ ոք կարող չէր ապահով մնալ հոգեծախ դքսի ձեռքից», գրում էր մեծահամբաւ Զօյմէն, որ նոյնպէս վաճառուած էր. «հրապոյր, նենգութիւն, խաբէութիւն, սպառնալիք և պատրանք—ամեն բանի ընդունակ էր նա։ Նրա հրամանով ոչ թէ միայն բնիկներն էին ձերբակալ լինում, բանտարկվում և վաճառի հանվում, հապա և օտարազգիները, եթէ նրա ձեռքն ընկնէին»։ Երբ արծաթի գնով մատնուած հպատակները նաւ նստելու էին քշվում, Բայրոյթ-Անսփաքի դուքսը հրացանը ձեռին

Մայն գետի ափին կանգնած, մահ էր սպառնում ամեն մէկին, ով որ փախչելու փորձ կը փորձէր: Այս կերպով 29,000 գերմանացիք ծախուեցան Անգլիային, իբրև «Թնդանօթների ճարակ»:

«Մտածող ճանապարհորդը կարող չէ առանց յոգւոց հանելու յիշել Վիլհէլմսհեօէի փառահեղ պարտէզները, որոնք բնակիչների արեան գնով են տնկուած», ասում է մի անգլիացի լորդ:

Վերն արդէն ասել էինք, թէ Հօու զօրավարն ստիպուած էր Բօստոնից դուրս գալով նաւ նստել իւր զօրքի հետ. Նրա դիտաւորութիւնն էր մի ուրիշ տեղ ոտք դնել Ամերիկայի մէջ: Վաշինգթօն իսկոյն գուշակեց, որ նա Նիւ-Յօրկն ունէր ի նկատի, ուստի ինքն էլ աճապարեց այն տեղ հասնել իւր զօրքով:

Հօու զօրավարի նաւատորմն, որին այժմ միացած էին և ուրիշ պատերազմիկ նաւեր, ամերիկացի զօրքի կրկնապատիկն էր կրում իւր մէջ: Նա ցամաք ելաւ Լօնգ-Իսլանդի վրայ, Նիւ-Յօրկին մօտ, կամելով նախ նուաճել այս քաղաքն և ապա թէ դէպի դուրս արշաւել հարաւային և հիւսիսային ամերիկացւոց միաւորութիւնը խափանելու համար:

Ահա այդ տեղ էր, որ մի ճակատամարտ պատահեցաւ, որի մէջ մանաւանդ հէսսէնցիք

մի զարմանալի քաջութիւն ցոյց տուին, յանդուգն խիզախմամբ ամերիկացւոց վրայ խուժելով—ասես թէ մեռնել էին կամենում իրենց հայրենի երկրից յափշտակելուն համար։

Ամերիկացիք պարտութեան և մինչև անգամ կղզու վրայ պաշարուելու և գերի բռնուելու վտանգի մէջ ընկան։ Այն ժամանակ Վաշինգթօն որոշեց յաջորդ գիշերուայ մթին նաւ նըստեցնել իւր փոքրիկ բանակը. բայց մինչդեռ նա թշնամուն խաբելու համար բանակի կրակները վառ պահելու հրաման էր տալիս, դաւաճանութիւնը որոգայթ էր լարում նրա զօրքը կործանելու մտքով։ Անգլիացւոց համակրող մի կին կամենում էր իւր խափշիկ սպասաւորի ձեռքով իմացնել նրանց Վաշինգթօնի շարժմունքը. հէսսէնցի գիշերապահները բռնեցին սպասաւորին։ Զուր էր աշխատում սա երդում անելով հաստատել, թէ մի շատ կարևոր լուր ունէր հաղորդելու Հօու զօրավարին — հէսսէնցիք ոչ մի բառ չ'կարացան հասկանալ խելագարի պէս կոտրտուող սևի շրթունքից և կարծելով, թէ նա մի լրտես էր, կալեցին նրան և միայն լուսու դէմ տարին զօրավարի մօտ։ Սակայն նրա բերած լուրը, որ գիշերուայ մէջ անասելի մեծ արժէք պիտի ունենար զօրավարի համար, այժմ է՛լ ոչ մի նշանակութիւն չ'ունէր. Վաշինգթօն

արդէն նաւ էր մտած, թակարդի մէջ կարծուած թշնամու հետքն անգամ չ'կար։

Հանդամանքներին նայելով, դրանից լաւ բան անել չէր կարող Վաշինգթօն. նա մեծ խոհեմութեամբ յաւարտ հանեց այս գործն. նա մինչև վերջին բոպէն անձամբ հսկում էր զինուորների նաւ մտնելուն վրայ և դրեթէ երկու օր և երկու գիշեր չէր իջնում ձիուց։

Այսպէս ուրեմն ամերիկացւոյ զօրութեան ամենաընտիր մասն փրկուեցաւ, սակայն որչափ նուազ էին նրանք թշնամու համեմատութեամբ։ Հայրենասէր մարդիկներից շատերը վշտահար սրտով էին նայում ներկայի վրայ և Վաշինգթօն ինքն էլ երբեմն այնպիսի տխուր ժամեր և օրեր էր ունենում, որ կարծես թէ բոլորովին ճնշվում էր բարի գործի ծանրութեան տակ. սակայն և այնպէս նա վճռած էր մինչև յետին ժամը հաւատարիմ մնալ այդ գործին, թէ և դրա համար իւր կեանքն անգամ զոհելու պէտք լինէր։

Հօգւով սրտով հայրենիքին նուիրուած անձինքներից պահանջվում է, որ նրանք առաւել ևս հաւատարիմ լինին դրան նեղութեան օրերում. այսպէս էլ անում էր Վաշինգթօն։ Լոնգ-Խոլանդի չարաբաստ կռուից յետոյ շատ դժուար դրութեան մէջ ընկան ամերիկացիք, ինչ-

պէս որ ակներեւ ցոյց են տալիս Վաշինգթօնի նամակները։

«Մեր վիճակն իրաւ բաւական ողբալի է», գրում էր նա ընդհանուր ժողովի նախագահին. «Լօնգ-Իսլանդի պատահարն ամբողջ զօրքին վհատութիւն պատճառեց. բանակիս ամենաքաջ զինուորներն անգամ, փոխանակ նորից սիրտ առնելու պարտութեան վրէժը հատուցանելու համար, յուսահատուած են եւ կամենում են տուն վերադառնալ. շատերն արդէն գնացին, կէս կէս եւ լիք լիք վաշտեր թողին մեզ, մինչեւ անգամ ամբողջ գնդեր մեկնեցան։ Ի՞նչ կ՚լինի այս բոլորի վերջը մանաւանդ այդ խառն դրութեան մէջ այնպիսի քաջավարժ եւ ռազմագէտ ոսոխի դէմ յանդիման։ Վասնորոյ ես դարձեալ կրկնում եմ արդէն առաջ էլ քանիցս անգամ յայտնած միտքս, թէ մեր ազատութիւնն վտանգի մէջ կ՚մնայ, քանի որ սրա պահապանները կարճ ժամանակով ընտրուած դուզաղներ լինին։ Մեզ այնպիսի զօրք է հարկաւոր, որ մինչեւ պատերազմի վերջը զէնք կրէր. միայն այսպիսի զօրքի մէջ կարելի է մտցնել կարգ, օրէնք եւ հնազանդութիւն։

Երկու օրից յետոյ նա գրում էր. «Մեր կացութիւնն և՛ս առաւել վատացաւ. ամբողջ դումարտակներ ղատուեցան բուն բանակից, եւ ես

հաւաստի եմ, որ մնացեալներն էլ հետզհետէ նրանց օրինակին պիտի հետեւին»:

Սակայն և այնպէս Վաշինգթօն դեռ այնքան հանգիստ էր հոգւով, որ մինչև անգամ կարեկցութեան խօսքեր էր գտնում վհատողներին արդարացնելու համար:

Նա գրում էր. «Զէնքի անսովոր և զինւորական հրահանգներից զուրկ մարդիկ, որոնք դեռ նոր են դուրս խլուած ընտանեկան հանգիստ շրջանից, դիւրաւ են վհատում կիրթ և վարժ զինուորներին հանդիպելիս, և որովհետև նրանք բանակի մէջ ընկնելով բոլորովին սովորականից տարբեր կեանք են վարում, ուստի և շատ բնական է, որ տուն վերադառնալու անզուսպ փափագ զգային»:

Այնու հանդերձ երբ մի քանի օր յետոյ Հէսսէնցիք ի փախուստ դարձրին նրա ամենալաւ դասակները, Վաշինգթօնի համբերութիւնը վերջապէս հատաւ. Նա սլացաւ փախստականների վրայ, հանեց ատրճանակներն և իւր իսկ զինուորների գլխին կրակ տալով, գոչեց զայրագին — «Ուրեմն սրանց հետ պաշտպանեմ ես Ամերիկան»:

Սպարապետը յուսահատուած էր. ասես թէ նա մահ էր խնդրում, անշարժ կենալով մի տեղի վրայ, մինչդեռ զինուորները նրան թողել էին

և թշնամին միայն յիսուն քայլ էր բացակայ։ Նա գերի կ'ընկնէր անշուշտ, եթէ համհարզը, նրա նժոյգի սանձից բռնելով, դրեթէ ստիպմամբ նրան չ'փրկէր։

Վաշինգթօնի զօրքը շարունակում էր յետ նահանջել։ Ընդհանուր ժողովը կրկին տեղեկութիւն ստացաւ իրերի վիճակի մասին և ապա թէ հրամայեց անել մի նոր զօրաժողով։ Բայց այս հրամանի իրագործումը ժամանակի կարօտ էր. առձեռն պատրաստ մարդիկ չ'կային, և եթէ լինէին էլ, դարձեալ պէտք էր քիչ թէ շատ մարզել նրանց. այն ինչ թշնամին, վերջին յաղթանակով ոգևորուած, մտածում էր ըստ կարելւոյն շուտով մի մահուան հարուած տալ ոսոխին։ Մի ուրիշ հանգամանք էլ կար, որ ծանր էր ամերիկացւոց բանակի համար, այսինքն որ անգլիական կառավարութիւնը դեռ շատ գաղտնի կուսակիցներ ունէր Միացեալ Նահանգների մէջ։ Այժմ դրանք գլուխ վերցնելով պատեհ առթի էին սպասում օգնելու անգլիական զօրքին. այո, կային և այնպիսի նահանգներ, որոնք մինչև անգամ օժանդակ վաշտեր էին առաքում Հօու զօրավարին։

Այսպիսի պարագաների մէջ ինչ կ'մնար անել ազատապետին, եթէ ոչ նորից Փաբիոսի դերն խաղալ, այսինքն խորշել հակառակորդից

և առաւել դիպան ժամանակի թողնել գործի վախճանը։ Այս աղէտալի կացութեան հետեւանքն էր նոյնպէս, որ մի քանի բարեմիտ անձինք, պատերազմական իրերին հիմնովին ծանօթ չլինելով—իրերին, որոնց հրապարակային մերկացումն միայն հայրենասէրների սիրտը կարող էր կոտրել, իսկ թշնամուն խրախոյս տալ—տրտունջ էին յայտնում Վաշինգթօնի ընթացքից. և այս ազնիւ հոգին դառնութիւն էր ունենում տեսնելու, որ մի քանի փառասէր և անշնորհ մարդիկ, իւր դէմ միաբանուած, հնար էին նիւթում գահավիժել իրեն և մէկ ուրիշի տալ իւր իշխանութիւնն և պաշտօնը։ Ի սէր հայրենեաց այս վշտին էլ համբերեց նա և երբէք մտքովն անգամ չ'անցկացրեց թշնամանք հատուցանել չարակամներին, այլ շարունակեց և՛ս առաւել մեծ փութով ջան դնել և տքնիլ ազատութեան գործի վրայ։

Բանակամիջի բոլոր գործերը նա մէնակ էր հոգում դրեթէ առանց ոչ և է օգնութեան։ Նա պարտական էր ընդհանուր ժողովի հետ թղթակցելուց զատ, որ միայն արդէն շատ ժամանակի կարօտ էր, յայտել դրա վճիռներին իւրաքանչիւր նահանգի վարչութեան և յետոյ տասներեք ատեաններից ամեն մէկի հետ նորից հաղորդակցել։ Կարող ենք երևակայել ուրեմն,

*թէ ո՛ր աստիճանի պիտի բարդուէին ապագա-
պետի պարապմունքը գործելի այս կարգից և
ի՛նչ անձանձրոյթ աշխատասիրութիւն, ի՛նչ տակ,
ի՛նչ երկաթի համբերութիւն պէտք էին նրան
յառաջադիր նպատակից չ'վրիպելու և որպէս
շտապ տագնապից, նոյնպէս էլ որ և է սխա-
լանքից հաւասար ազատ մնալու համար:*

*Թէ ո՛րչափ ընդարձակ էր Վաշինգթօնի
թղթակցութիւնը պատերազմի և խաղաղութեան
ժամանակ, պարզ կ'երևի, եթէ ասենք, որ յա-
տուկ նրա ձեռքով գրուած նամակներն, որոնք
այժմ մեծ խնամքով հաւաքուած են պատաս-
խաններով հանդերձ, առաւել քան երկու հա-
րիւր մեծադիր հատորներ են կազմում: Այս ա-
հագին նամականին մեծ մարդուց մնացած մի
թանգագին ժառանգութիւն է համարվում այս
օր բոլոր ամերիկացւոց ազգի համար: «Ով որ
կամենայ ուսումնասիրել այս հայրենեաց հօր
ամբողջ մեծութիւնը, նրա վեհական նկարագիրն
և հանգստութիւնը, նրա անշրջելի նպատակ-
ներն և հսկայական կամքը, — թո՛ղ անմիջապէս
նրա նամակների և տեղեկագիրների բուն աղ-
բիւրին դիմէ», ասում է նրան պաշտողներից մին:*

*Այս բոլորը միայն գրասեղանի զբաղմունք
էին. հապա դեռ ինչքա՜ն հոգսեր կային դրան-
ցից դատ. անվերջ էին նրա խորհրդածութիւն-*

ները բազմաթիւ մասնագէտների հետ գործու-նէութեան այս կամ ճիւղի նկատմամբ—պէտք էր, որ նա ամեն տեղ օգնութեան հասնէր։ Երբեմն հրաշք է թւում, որ մէնակ մի մարդ զօրում էր այսքան գործ կատարել, որ նա ոչ ապերախտութիւնից էր ընկճվում, ոչ էլ իւր տաժանելի վիճակից վհատում։

Նիւ-Յօրկ թշնամու ձեռքն ընկաւ, նոյն-պէս և Վաշինգթօն անուն բերդը. սպարապետը ստիպուած էր առաւել ևս յետ քաշուել իւր զօրքով. Լի զօրավարը, որ կամենում էր միա-նալ նրա հետ, գերի բռնուեցաւ։

---

## ԺԴ

## ԴԻԼԱՎԱՐԻ ԱՆՑՔԸ։—ՏՐԷՆԹՕՆԻ ԵՒ ՊՐԻՆՍԹՕՆԻ ՅԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ

Իւրաքանչիւր ազգ իւր պատմական կեանքի ընթացքում ունեցել է այնպիսի րոպէներ, երբ ամենքի սիրտը բացուել է, երբ մինչև այդ րո-պէն թաքուն պահուած մտքերն և զգացում-ները յանկարծ դուրս են թռել լոյս աշխարհ։ Այսպիսի մի խորհրդաւոր ժամանակի մէջ էր

դտանվում Ամերիկայի մանուկ պետութիւնը։ Լսենք, թէ ինչ է ասում սրա մասին Թոմաս Պէնը, գրչով ամերիկացւոց ազատութեան նպաստող՝ երևելի հանճարներից մին։

«Արդի ժամանակս մեր սրտերը փորձելու մի ժամանակ է», ասում է նա. «այս վճռական բաղէին սուտ զինուորը, կեղծ հայրենասէրը կ՚ուրանայ իւր պարտքն առ հայրենիս, իսկ ով որ հաստատ և հաւատարիմ կըմնայ, նա արժանի կ՚լինի ամեն մի տղամարդու, ամեն մի կնոջ շնորհակալութեան և սիրոյն։ Զարմանալի է, թէ ինչպէս արագ է ծագում սարսափը, ինչպէս շուտ է տարածվում բոլոր երկրի մէջ։ Ամեն մի ազգ պաշարվում է երբեմն այս տեսակ խուճապով. բայց սա էլ իւր բարի արդիւնքն ունի։ Սարսափը կայծակն է—շուտ է անցնում, այնուհետև սրտերն և՚ս աւելի զօրանում են և պնդանում։ Նա դառնում է կեղծաւորութեան և աղնուութեան մի լաւ փորձաքար»։

Եւ իրաւ չար ժամանակն արդէն այնով էլ օգտակար էր ազգին, որ նրա շնորհիւ երկգլխի, խիթալի, անազնիւ մարդիկն միանգամայն դատուեցան և ճշմարիտ հայրենասէրներն առաւել ևս յայտնի եղան։

Ընդհանուր ժողովն ի նշան կրկին ամրացեալ հաւատարմութեան դէպի Վաշինգթոնի

արժանիքը գլխաւորի — լիազօր հրամանատարի իշխանութիւն տուաւ նրան վեցամսեայ ժամանակով։ Սակայն Վաշինգթօն դեռ այս հաւատարմութեան գրի լուրն ընդունելուց առաջ վճռեց ձեռնարկել մի յանդուգն գործի, որի յաջողութեամբ յոյս ունէր ոմանց արիութիւնը բորբոքել, ոմանց էլ փոքրոգութեանը վերջ տալ։

Արդէն սկսուել էին Դեկտեմբեր ամսի սառնամանիքը. օդն այնպէս դառնաշունչ էր, որ անգլիացիք բնաւ աշխոյժ չէին զգում օգուտ քաղել իրենց նոր յաղթանակից և հալածել թշնամուն։ Հօւ արդէն ձմեռոց էր տարել իւր զօրքերն այն վստահութեամբ, որ գարնան էլ ժամանակ կ՚ունենար խորտակել սպառուած հակառակորդին։ Ինչպէս որ յարձակման ժամանակ, այնպէս էլ ձմեռոցի մէջ դասաւորուելիս՝ Հէսսէնցիք ստացան յառաջապահ տեղը։ Վաշինգթօն թշնամու դիրքի վրայ տեղեկութիւն ստացած լինելով, գիտէր, որ Հէսսէնցիք Դէլավար գետի միւս կողմն էին նստած, և յատկապէս գետափից չորս կամ հինգ մղոն հեռու-Տրէնթօնի մէջ և նրա շուրջը։ Վաշինգթօն ընդ ամենը 7,000 մարդ ունէր. նա բաժանեց դրանց երեք դաս, որոնք մի և նոյն ժամանակ երեք զանազան տեղից Դէլավարն անցնելով, թշնամու վրայ պիտի գրոհ տային։ Այս

գործի համար ծննդեան գիշերն էր ընտրուած:

Գիշերուայ մութն արդէն իջած էր, որ Վաշինգթօն իւր անմիջական իշխանութեան տակ 2,400 մարդ վարելով, Դէլավարին հասաւ: Հիւսիսային բուռն հողմը բուք և տարափ էր տեղում ամերիկացւոց երեսին, գետի վրայ սաստիկ սառոյց էր ընթանում. այսպիսի ժամանակ ջրից անցնելն չէ թէ միայն մի դժուար գործ էր, այլ և չափազանց վտանգաւոր:

Վաշինգթօն մտադիր էր արդէն կէս գիշերին գետի միւս եզերքն իջնել, բայց սառի շարժման և ուժգին փոթորկի պատճառով միայն գիշերուայ երրորդ պահուն կարացաւ ոտք դնել այդ եզերքի վրայ, ուր դեռ 20 հատ էլ թնդանօթ պէտք էր անցկացնել: Առաւօտեան չորս ժամին արդէն ամեն բան կարգի էր բերուած, և հրաման եղաւ դէպի Տրէնթօն խաղալու:

Հողմակոծ փոթորիկը շաչում էր առաջուայ կատաղութեամբ. բայց ո՞ւր էր դիմում Վաշինգթօնի խմբակը: Իւրնից տասնապատիկ զօրեղ մի թշնամու դէմ, որ անշուշտ արդէն ճակատ կազմած կ'լինէր ամերիկացիներին դիմադրելու համար, եթէ լուր ունեցած լինէր այդ խմբակի մօտենալու մասին: Դարձեալ յայտնի էլ չէր իւրկապէս, թէ միւս երկու թևերն արդեօք անցե՞լ էին գետից, թէ ոչ. յետոյ իմացուեցաւ, որ Նը-

բանք ժամերով ուշացել էին։ Ութերորդ ժամի դէմ առաջին գնդի առաջապահներն հրացաններով ողջունեցան և Հէսսէնցիների բանակը, որ Տրէնթօն էր, աղմուկ վերցրեց։ Սրանք դեռ գումարուելու վրայ էին, երբ Վաշինգթօն հասաւ քաղաքին և բուռն արկաւ յարձակման։

Հէսսէնցիք սկզբից մեծ քաջութեամբ էին ոգորում յարձակուողների դէմ, բայց երենց զօրավարի սպանուելուց յետոյ՝ ստիպուեցան զինաթափ լինել, որով մօտ 1000 զինուոր և 23 սպայ ամերիկացիների ձեռքն գերի ընկան. մի քանի հարիւր մարդ էլ դասալիք լինելով, վրտանգից ճողոպրեցան, որ բնաւ չէին կարանալ անել, եթէ Վաշինգթօնի միւս երկու թևերն էլ փոքր ինչ վաղ անցած լինէին գետից։

Զգուշութիւնը պահանջում էր շատանալ առ այժմ ձեռք բերուած արդիւնքով։ Թշնամու բուն բանակը հեռու չէր և պէտք էր սպասել, որ նա իսկոյն կ'փութար պարտութեան վրէժն լուծելու։ Վաշինգթօն վերադարձաւ Դէլավարի այս կողմը։

Այս խիզախ գործը — Դէլավարի անցքն և Տրէնթօնի յաղթանակը — ասես թէ մի հրաշքով նոր ոգի ազդեց հայրենասէր մարդիկներին։ Ո՛ւր էլ տարուէին հէսսէնցիք, ժողովուրդը խուռն բազմութեամբ վազում էր նրանց վրայ նայելու։

Այս Հէսսէնցիք մինչեւ այժմ ամերիկացւոց ամենաչար թշնամին էին. նրանց վայրագ բռնութեան վկայ էին շատ քաղաքներ եւ գիւղեր. այս բոլորի փոխարէն Հաւանական էր, որ ժողովուրդը կ՚ուզենար այժմ վրէժխնդիր լինել նրանցից: Այս պատճառով Վաշինգթօն մի ազդարարութիւն Հրատարակեց, որով յայտնում էր թէ Հէսսէնցիք ազատ կամքով չէին եկած Ամերիկա ազգային իրաւունքների դէմ մարտնչելու Համար, այլ թէ նրանք թշուառ զոհեր էին մի դաժան բռնակալի, որ վաճառել էր նրանց իբրեւ գրաստ, եւ թէ ուրեմն առաւել կարեկցութեան էին արժանի, քան թէ վրէժի: Եւ այս թուղթն ազդեց:

Վաշինգթօն լսելով որ անգլիացիք, փոխանակ իրեն Հալածելու, յետ էին քաշվում, որոշեց մի երկրորդ Հարուած էլ տալ նրանց, եւ առաջին անցքից չորս օր զկնի կրկին անցաւ Դէլավարից: Հօու զօրավարն 8,000 մարդ առաքեց նրա դէմ Կօրնվալիս լօրդի վարչութեամբ: Վաշինգթօն մի քանի անգամ յետ մղեց լօրդին, բայց սա չէր վՀատում, պատճառ իր գունդը թշնամիներից գերազանց էր, շուտով էլ մի նոր օժանդակ գունդ պիտի ստանար: ՎՀատելու տեղ նա դեռ յոյս ունէր, որ, ինչպէս ինքն էր ասում, Հենց թակարդի մէջ բռնելու էր աղուէ-

սին։ Բայց թէ արդեօք Վաշինգթօն յօժար կ'լի-
նէր այնքան երկար սպասելու իւր կայանի մէջ,
մինչև որ նորին վսեմափայլութիւնը, Կօրվալլիս
լօրդը, բարեհաճէր նոր նոր գնդերով պաշարել
նրան — այս մասին լօրդը մոռացել էր մտածել։
Վաշինգթօնի բանակի խարոյկներն արդարև
վառվում էին լոյսէ լոյս նոյն խսկ տեղում, ուր
որ նա կանգնած էր մի օր առաջ. բայց երբ
արշալուսին լօրդը հետախուզական աչքին գնելով
այն կողմ նայեցաւ, սաստիկ կտրած նշմարեց, որ
«թակարդը» դատարկ էր. Վաշինգթօն, մի քա-
նի մղոն շրջան տալով, նրա ետևն էր կանգնած
Պրինսթօնի մօտ... Այս տեղ նա նախայարձակ
դիմադրութեամբ գրոհ տուաւ լօրդին ի նպաստ
արշաւող օժանդակ զօրքի վրայ, որ երեք անգ-
լիական գնդերից էր, և մի ահեղ ճակատամարտ
սկսաւ։ Անգլիացիք մոլեգնաբար գուպարեցան, և
յաղթութիւնն երկար ժամանակ մերթ այս, մերթ
այն կողմն էր հակվում։ Ամերիկայցոց վտանգը
սաստկանում էր. առաւօտեան դատարկ գտնուած
բանակն և թնդանօթների որոտն արդէն վաղուց
լօրդի աչքը բացած պիտի լինէին թշնամու ձեռ-
նարկութեան վրայ, և մի-թէ Կօրնվալլիս, որ
այրուձի էլ ունէր իւր մօտ, չէր կարող թիկուն-
քից ընկնել ամերիկայցոց վրայ, մինչդեռ սրանք
կռուի էին բռնուած օժանդակ զօրքի հետ։

Ուրեմն պէտք էր յաղթել և շուտ յաղթել։

Ամերիկացիք անասելի կորովով էին շահատակում. Նրանց վառում էր սպարապետի օրինակն՝ պատճառ ուր որ սաստիկ էր դուպարն, այն տեղ էլ տեսնում էին Նրան։

Սքանչելի էր այն ժամանակ Նրա յաղթանդամ պատկերը, պատերազմական եռանդով բորբոքուած։ Սպարապետն յաճախ խպառ անհետանում էր վառօդի թուխ ամպերի մէջ իւր կեանքի համար երկիւղ քաշող զինուորների աչքից, որոնք մտածել անգամ սարսափում էին, թէ ի՜նչ կ'լինէր նրանց գործը, եթէ մահը յափշտակէր նրան իրենց միջից։ Անհնարին էր, որ այս դիւցազնական ճգունքն մի արժանաւոր յաջողուածով չ'պսակուէր։

Թշնամին ընդ կրունկն դարձաւ, թողնելով դաշտի վրայ 500 սպանուած և վիրաւոր և 300 էլ գերի։ Վաշինգթօնի զօրականները հրճւում էին։ Այս դէպքից փոքր ինչ յետոյ սպաներից մին գրում էր. «Մենք այնպէս ենք զգում մեզ, ասես թէ մեռելութիւնից յարութիւն առած լինէինք. գունդ գունդ գուգազներ են գալիս մեզ մօտ — հին զինուորները նորից բանակ են վերադառնում»։ Մի ուրիշ սպայ էլ հետևեալն էր գրում Վաշինգթօնի մասին։

«Զօրքը բուռն սիրով է սիրում սպարա-

պետին, սակայն և այնպէս ես ունիմ նրա դէմ ասելու մի բան, այսինքն որ նա շատ քիչ է հոգ տանում իւր յատուկ անձի վրայ — և այս՝ ամեն մի ճակատամարտի մէջ։ Իւր անձնական քաջութեամբ զօրականի սիրտն վառելու փափագն ամեն բան մոռացնել է նայիս նրան»։

Վաշինգթօն չոգաւ ձմերելու Մօրրիսթօունի լեռնոտ շրջակայքը. այն տեղ մի անմատչելի կայան հաստատելով նա սկսաւ այն աստիճանի նեղել թշնամուն, որ սա էլ չ'կարացաւ դիմանալ նրա յարատև յարձակումներին և վերջապէս խալաւ մաքրեց մերձաւոր նահանգները։

Ամերիկայի դատը Դէլավարի անցքից առաջ միանգամայն կորած էր համարվում Եւրոպայի մէջ. իսկ այժմ ովկիանի թէ այս և թէ այն կողմը սկսան հաւատալ, թէ Ամերիկան չի պիտի խոնարհէր Անգլիայի առջև։ Ֆրանսիայի մէջ ջերմ համակրութիւն էր ծագել դէպի ամերիկացւոց ազգն և սրա դիւցազնասիրտ սպարապետը։ Անգլիայի մէջ անգամ մեծարանքով անուանում էին նրան «Ամերիկացի Փաբիոս»։

## ԺԴ

## ԼԱՖԱՅԷԹ — ԿՈՍՏԻՒՇԿՕ — ՇԹՕՅԲԸՆ

*Ոգևորութիւնն Ամերիկայի համար ամենից առաջ և ամենավառ կերպով բորբոքուեցաւ Ֆրանսիայում: Ազատութեան դրօշի տակ նահատակուող ամերիկացիք համակրութիւն գտան ֆրանսիացիների կողմից մանաւանդ այն պատճառով, որ սրանք էլ երկար ժամանակ դառն լլկանք էին կրած Բուրբոնների վատթար վարչութեան ներքև և իրենց մէջ էլ լիքն էր այն բարկութիւնն, որ փոքր ինչ յետոյ պիտի դուրս վիժէին որոտընդոստ դղրդմամբ:*

*Ամերիկայի անկախութեանը շատ ջերմ համակրող ֆրանսիացիներից մինն էր, օրինակի համար, տասնինն տարեկան գնդապետ Լաֆայէթը—գեղեցիկ, հարուստ, յաջող ամուսնութեամբ երջանիկ և Ֆրանսիայի ամենաքաջ տոհմից սերուած վեհանձն պատանին:*

*Լաֆայէթի առջև ամենաշքեղ ապագայ էր փայլում. բայց նա ատեց Բուրբոնեան պալատի փարթամ կեանքն, զայրացաւ ճնշեալ ժողովրդից հանուած հարկերի չարաչար վատնութեան վրայ. ատեց և փարիզեցւոց թեթև*

վարքն ու բարքն, և այս բոլորից հեռանալով, առանձնացաւ իւր ագարակներից մինի մէջ, ուր ամենավսեմ երանութիւն էր վայելում իւր նորատի, գեղանի, առաքինի և քաջակիրթ կնոջ հետ: Սակայն ազատութեան սէրն հանգիստ չէր տալիս նրան. նա փափագում էր մարտակից լինել այն գիւղացիներին, որոնք նահատակվում էին Ամերիկայի մէջ:

«Ներշնչուած այն հզօր եռանդով», ասում է Բոտտան, «որ սովոր են ազդել մեծ դէպքերն ազնիւ սրտերին, Լաֆայէթ, այն դարու գրեթէ բոլոր մարդիկներին յատուկ ջերմութեամբ, իբրև իւր սեփական գործն դիտեց ամերիկացւոց ազատութեան գործն և փութաց յայտնել Փարիզ գտնուող ամերիկացի դեսպաններին, թէ կամենում էր նրանց հայրենիքն երթալ: Սկզբում սրանք շատ հաւան էին նրա մտքին. բայց յետոյ, երբ Լօնգ-Խոլանդի ձախող դէպքի գոյժն առին, այնքան ազնիւ երևցան, որ ինքեանք ջանացին շրջել նրան երթալու խորհըրդից, մանաւանդ որ արդէն վատ դրութեան մէջ նրանք մի նաւ անգամ կազմելու ձեռնհաս չէին ուղևորութեան համար: Անվեհեր պատանին պատասխանեց, թէ նրանց գործին օգնելու րոպէն յատկապէս ա՛յժմ էր, թէ քանի՛ շատ վհատած լինին ազգերն, այնքան աւելի խրախուսիչ

կ՚լինէր իւր օրինակն և թէ վերջապէս նա պատրաստ էր ինքն իւր ծախքով մի նաւ ճարել: Արքունի դուռն, դուցէ Անգլիային հաճոյանալու մտքով և կամ մարքիզի արշաւանքին չ՚հաւանելով, արգելեց նրա չուն, և ասում են, թէ զրահաւոր նաւեր անգամ արձակեց Ատլանտեան ովկիանի վրայ՝ նրան բռնելու համար. այսու ամենայնիւ երիտասարդ կտրիճն հրաժեշտ տւաւ նորափեթիթ ամուսնուց և նաւեց:

Նա յաջողութեամբ հասաւ Ամերիկա և դիմեց նախ և առաջ ընդհանուր ժողովի դահերէցին: Սրա աչքում շատ լաւ համարում չ՚ունէին ֆրանսիական սպաներն, քանզի այս սպաներից ոմանք չափազանց մեծամիտ էին և միայն բարձր պաշտօնի և լաւ ռոճիկի հետամուտ: Լաֆայէթ յայտնեց, թէ պատրաստ է ծառայել իբրև մի սոսկ զօրական և անթոշակ: Նրա տեսքն, նրա ամբողջ բարքն և վարքը ժողովի սիրտը գրաւեցին, և նա գեներալ-մայորի աստիճան ստացաւ: Վաշինգթօն գրկախառն սիրով ընդունեց նրան և այնուհետև այս երկուքի մէջ ծագած մտերմութեան և սիրոյ կապերն մինչև մահ տևեցին: Լաֆայէթ շատ անգամ ցոյց տուաւ իւր քաջութիւնը պատերազմական դաշտի վրայ:

Թադէոս Կոստիւշկօ անուն լեհացին էլ

նուիրեց իւր սուրբ Ամերիկայի ազատութեան գործին։ Նրա ազնիւ սրտի վսեմութիւնն այդէն մանուկ հասակից էր երևել. Նա իւր բարեջան ուսումնասիրութեամբ բոլոր ընկերներից գերազանց էր Վարշավայի զինուորական վարժարանի մէջ։ Ուսումն աւարտելուց և հարիւրապետի աստիճան ստանալուց յետոյ՝ Նա ծանօթանում է Յովսէփ Սօսնովսկու՝ Լիթվայի մի հարուստ և մեծատուն մարաջախտի դստեր հետ և անշէջ սիրով սիրահարվում է այս օրիորդին։ Երկուքն էլ նորատի, շնորհալի, բարւոյ և գեղեցիկ եռանդով վառուած պատանիք—դրանք ասես թէ իրար համար էին ստեղծուած։ Բայց այլ էին հօր կարծիքը. սա մի ճոխ և տոհմիկ փեսայ էր որոնում։ Կոստիւշկօն մարաջախտի ոտքերն ընկած՝ աղաչում է Նրան օրհնել իւր սէրը. բայց Նա սպառնում է կոպիտ խօսքերով։ Աղջիկն էլ, մայրն էլ չոքում են Նրա առջև—գո՜ւր. խրոխտ հայրը սպառնում է վանք դնել աղջկան։ Այն ժամանակ կաթոգին սիրահարներն վճռում են փախչել, և փախչում են մի մութ գիշերով։ Այս բանը մատնում են մարաջախտին. սա իսկոյն արձակում է փախստականների ետևից սպառազէն ձիաւորներ։ Բանը տաք կռուի է հասնում։ Կոստիւշկօն խոր խոցուած գետին է ընկնում։ Ուշքի գալով՝ Նա

տեսնում է իւր անձն ալեան մէջ թաթաւուն և նշմարում է գետնի վրայ մի շալ, որ սիրուհու խրանից էր վայր ընկած տագնապալից րոպէին. Նա վերցնում է այդ շալն և այնուհետև ման է ածում դրան բոլոր պատերազմների մէջ՝ իբրև մի սուրբ յիշատակ։ Այս դժբախտ դէպքից յետոյ Կոստյուշկօն չւում է Ամերիկա՝ կամ յաղթելու կամ մեռնելու ազատութեան մարտի մէջ։

«Առանց ո՛ր և է նիւթական միջոցի», ասում է Մ. Փիլիէն, «և առանց ո՛ր և է յանձնարարական նամակի՝ նա շիտակ ներկայացաւ Վաշինգթօն սպարապետին։—Ի՞նչ բանի էք եկած, հարցրեց նրան սպարապետն կարճ խօսքով։—Եկած եմ մարտնչել Ամերիկայի ազատութեան համար, պատասխանեց անվեհեր պատանին, նոյնպէս կարճ։— Ի՞նչ բանի էք ձեռնհաս, հարցրեց կրկին առաջինը, և Կոստյուշկօն իւր ընդաբոյս պարզութեամբ ոչինչ պատասխան չ՚տուաւ, բայց թէ այս բառերն—Ընթարկեցէ՛ք ինձ փորձութեա՛ն»։

Ընթարկեցին, և Վաշինգթօն տեսաւ, որ արդարև մի քաջ տղամարդ էր այս լեհացին։

Կոստյուշկօն գնդապետի պաշտօն ընդունեց և շատ զօրավարների մօտ համհարզի պաշտօն վարեց։ Երբ անգլիացիք Ֆիլադէլֆիայից յետ

էին մղվում, նա, կամաւոր զօրականներին առաջնորդելով, արիւթեան հրաշքներ գործեց։ Լաֆայէթ, որ թշնամուն հալածող գնդի զօրագլուխն էր, երբ կամեցաւ իմանալ տաք դուպաբածի երեկոյին, թէ ո՛վ էր այն կամաւորների առաջնորդն, նրա ասացին. «Մի երիտասարդ լեհացի, ազնուական տոհմից, բայց չքաւոր և անանուն, եթէ չենք սխալվում—Կոստիւշկօն»։

Կամաւորներն այն գիշեր բուն բանակից կէս ժամ հեռու էին նստած։ Լաֆայէթ իսկոյն սլացաւ այն տեղ, հրամայեց ցոյց տալ իրեն Կոստիւշկօյի վրանն և ներս մտնելիս տեսաւ մի սիրուն երիտասարդ, որ տակաւին խպառ արիւնոտ և փոշոտ, մի սեղանի մօտ նստած, ուշի ուշով զննում էր մի քարտէզ։ Այս տեղ նրանք առաջին անգամ ծանօթացան իրար հետ և ամենասերտ բարեկամութեամբ զուգուեցան առմիշտ։

Ամերիկայի անկախութեան պատերազմի մէջ նշանաւոր դեր կատարեց և բառօն Շթօյբըն գերմանացին, որ Պրուսիայի զինուորական բանակից էր եկած—Եւրոպայի առաջին բանակից, ինչպէս ասում էր Վաշինգթօն։ Իբրև զօրավար՝ նա շատ մեծ օգուտ տուաւ Ամերիկային։ Չ՚նայելով, որ ոչ մի անգլիերէն բառ չը գիտէր, նա յանձն առաւ ընդհանուր տեսչի

պաշտօնն և կարճ ժամանակում այնպէս մար-
զեց և հրահանգեց ապերասան գաւզայններին,
որ նրա մի խօսքն, մի ակնարկն արդէն հերիք
էր, որ իւր կամքին անպայման հնազանդէին:
Վարչութիւնը պատերազմից յետոյ 16,000 օրա-
վար հող պարգևեց նրան «այն բազմարդիւն
ծառայութեան համար, որ նա մատուցած էր
Միացեալ Նահանգներին պատերազմի ժամանակ»:

Ուրիշ գերմանացիք էլ եկած էին Ամե-
րիկա՝ բռնութեան լուծի դէմ ողորմ ազգի
ազատութեան նպաստելու համար: Գաղթած
գերմանացիք և սրանցից սերուած ամերիկացիք
կազմում էին ամբողջ գնդեր, և յատկապէս դրանց
վրայ էր ամենից շատ յոյս դնում Վաշինգթօն:

---

ԺԵ

## ՄԻՆՉԵՒԻ ՀԱՂԹՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԻԼԸ

Եօթն տարի տևեց Ամերիկայի ազատու-
թեան պատերազմը: Նեղութեան օրերն դեռ
չէին անցել, այն օրերն, երբ Ամերիկայի ամե-
նալաւ մարդիկն անգամ յուսահատվում էին
պատերազմի յաջող ելքից:

Զինուորական կարգապահութիւնը տակաւին թերի էր. բառօն Շթօյբընի ջանքերն այս մասին դեռ չէին արդիւնաւորուել բովանդակ զօրքի մէջ։ Ամբողջ պատերազմական կարգը դեռ լինելութեան մէջ էր. պարէնի և զէնքի հայթհայթումն վատ, ուտեստն և հագուստը պակասաւոր, որով և զօրականի համբերութիւնը դառն փորձութեան ենթակայ։

Ընդհանուր ժողովը պարտական էր թղթադրամ մտցնել երկրի մէջ. բայց անգլիացիք առատ առատ կեղծ դրամ բերելով, նրանց արժէքը կոտրեցին։

Վաճառականութիւնն ընկած էր, պատճառ թշնամին ծովի վրայ զօրեղ լինելով, մերթ այս, մերթ այն եզերքն էր ապատակում և դատածը յափշտակում։

Եւ դեռ ինչպիսի՜ չարիք պիտի վրայ հասնէին, եթէ ազգը Վաշինգթօնի նման մի սպարապետ չ՚ունենար, որի օրինակն ամենքի առջև փայլում էր, որի իմաստուն խօսքերն ամենքի սիրտն ու միտքը թափանցում էին։ Պատերազմի ժամանակ զինուորը հակամէտ է բռնութեամբ սեփականել ամեն բան, ինչ որ աչքն ընկնի, և ստեպ պատահում են այնպիսի պատերազմներ, երբ չեզոք ժողովուրդը թէ ոսոխից է նեղվում, թէ ընկերից։ Ընդհանուր ժողովն անգամ մի

աչքով էր նայում, երբ ամերիկացի գնդերից ոմանք հարստահարութեամբ էին պաշար ճարում. սակայն ոչ Վաշինգթօն։ Սա ամեն բանի մէջ նպատակին յարմար և ուղիղ միջոցների դիմելով, միշտ հրաւէր էր կարդում ժողովրդին առաւել փոյթ տանել պարէնի մասին և համոզիչ փաստերով ցոյց էր տալիս այն չարիքը, որոնք անշուշտ ծագելու էին, եթէ առօրեայ պէտքերն բռնութեամբ ձեռք բերելու սովորութիւնն արմատանար զօրքի մէջ։

«Այս սովորութիւնն», ասում էր նա, «միայն մի վաղանցուկ դիւրութիւն է տալիս ցաւին և յետոյ շատ վատ հետևանք է յառաջ բերում, պատճառ գժգոհութիւն, ատելութիւն և երկիւղ է սերմանում ազգի մէջ և ամենայաւ զօրականներին անգամ դէպի զեղծմունք, կռիւնք, հուզկահարութիւն դրդում,—ախտեր, որոնք յետոյ դժուար կ'բուժուին և չէ թէ միայն ժողովրդի, հապա և նոյն իսկ բանակի համար մահաբեր կ'դառնան։ Վա՜յ մեզ, եթէ անհրաժեշտ հարկն այս տեսակ միջոցներ գործածել տայ զօրքին»։

Բայց և այնպէս Վաշինգթօն ազատ չէր մնում զրպարտութեան սլաքներից. յիմար մարդիկ նրա արժէքն ուրանում էին, իսկ փառասէրները նրա տեղն անցնելու թեկնածում, ինչպէս որ անում էր, օրինակ, Գաթէս զօրավարը։

Զանազան գնդերի մէջ էլ ստահակ ըմբոստութիւններ էին յառաջ գալիս, և դրանց պատճառն էր—դառն քաղցը, զօրականի կրած տառապանքը: Ընդհանուր ժողովն կամենում էր խիստ պատիժներ գործ դնել հեստերի դէմ. սակայն Վաշինգթօն «ի միտ առէք, գրում էր ժողովին. որ զինուորները քարի կամ փայտի կտորներ չեն, որ կարանան դիմանալ սովի և ծարաւի, ցրտի և բուքի»: Ձմեռն անգամ զինուորներն անկօշիկ էին մնում և երբեմն պատահում էր, որ նրանց ճանապարհը ձիւնի վրայ թողուած արիւնոտ հետքերից էր իմացվում: Այս աղէտալի դրութեան մէջ սպարապետը սրտառուչ աղերսներով ջան էր դնում սիրտ տալ բանակին, թախանձում էր հայրենիքի համար տոկալ վշտերին, ապա թէ զինուորի կոչման վսեմութիւնն յիշեցնելով, ասում էր. «Սուրբ է մեր կոչումը. Թերութեան մի ստուերն անգամ կարող է նսեմացնել մեր փառաւոր գործերի փայլն»:

Խստութեան տեղ՝ Վաշինգթօն սիրում էր դիմել մարդկային սրտի լաւագոյն լարերին և ուրախանում էր տեսնելով, որ իւր ջանքերը բարի արդիւնք էին տալիս: Երկաթի խստութիւնն և սրան զուգակից ահարկութիւնը նա պահում էր միայն արտաքոյ կարգի դէպքերի

համար և այն ժամանակ անողոք ակնդուլթեամբ ազատ ընթացք էր տալիս պատերազմական օրէնքին, որ ըմբոստներին գնդակ էր սպառնում, մատնիչներին—կախաղան։

1777 թ. աշնան զէնքերի յաջողութիւնն Բրանդվինի և Ջէրմընթօունի կռիւների մէջ երկու անգամ վրայ վրայ անգլիացւոց կողմն անցաւ։ Այնուհետև նրանք դարձեալ մի նոր գունդ պիտի ստանային Կանադայից Բուրգօյնի առաջնորդութեամբ։ Սրա դէմ Վաշինգթօն առաքեց մի առանձին գունդ, որի զօրավարներն էին Առնօլդ և Գաթէս։ Թշնամիները ճակատեցան և առաջին նուագին գործն անորոշ մնաց. սակայն երկրորդ անգամին անգլիացւոց զօրավարն անձնատուր եղաւ Կարթագօյի մօտ, և Վաշինգթօն հետևեալ լուրն հաղորդեց ընդհանուր ժողովին։

«Այս բարեբաստիկ օրն 6 զօրավար, 5,000 զինուոր, 5,000 հրացան և 27 հրետ անցրեց մեր ձեռքը—թշնամու բանակի բոլոր մթերքովն հանդերձ. բայց այժմանէ՝ հետազօտութեան ժամանակ բռնեցինք 2,000 գերի, որոնց մէջ կան և շատ սպաներ»։

Այս յաղթանակից յետոյ Ֆրանսիայի հետ դաշն կապելու գործը, որի մասին երկար բանակցութիւն էր եղած, լրման հասաւ. սակայն

դաշն հաստատելիս Փրանսիան առաջնորդվում էր ոչ թէ սիրով դէպի նոր պետութիւնը, այլ վրէժխնդիր ատելութեամբ դէպի Անգլիան, որին կամենում էր կարելոյն չափ նեղել և տկարացնել: Ամերիկացիք հարկաւ ուրախ էին այս նիզակակցութեան. բայց Փրանսիայի չափաւոր օգնութիւնը նրանց յոյսերին համապատասխան չեղաւ և նրանք վերջի վերջոյ ստուգեցին, որ չէ թէ օտարի թոյլ աջակցութեան պիտի ապաւինէին, որ դեռ կամենում էր մի առանձին նահանգով վարձատրել իրեն, հապա իրենց յատուկ ճգնութեան և ուժին:

Անգլիան այժմ երկու թշնամիների հետ գործ ունենալով, ստիպուած էր լարել իր բոլոր զօրութիւնը: Հօու զօրավարն, որ այնքան տարիներէ ի վեր պարծենում էր, թէ ահա այս օր կամ վաղը խաղաղ կը ջարդէր ապստամբներին, յետս կոչուեցաւ և նրան յաջորդեց Կլինթօն զօրավարը:

Անգլիացի սպաները այժմ առաջուանից էլ սաստիկ էին գրգռում հնդիկ ցեղերին, ինչպէս են Իրօքէզները և Կրիկները, խուժել նահանգների վրայ մահաշունչ աւարառելով, և մինչև անգամ ինքեանք էլ առաջնորդում էին նրանց արիւնռուշտ հրոսակներին, հուր և սուր սփռելով որ տեղ և պատահէր: Այս բոլորի հետե-

ւանքն այն եղաւ, որ գաղթականներն էլ վրէժ-խնդրութեան դիմեցին։

Բայց միայն այդ չէր հետեւանքը։ Ամերիկացիք երբ տեսան, որ Անգլիան իրենց դէմ մարդասպան սրիկաներ էր արձակում, որոնք լկում էին մինչեւ անգամ կին եւ աղջիկ, նրանց դիմադրութեան ոգին կրկնապատիկ բորբոքուեցաւ. կիներն անգամ հայրենասիրութեան եռանդով վառուեցան, եւ երիտասարդ չ՚մնաց, որ դրօշակի տակ մտնելու չ՚փութար։

Շատ պատերազմներ տեղի ունեցան այնուհետեւ, որոնց ելքը մերթ այս, մերթ այն կողմին էր ժպտում։ Վերջապէս Վաշինգթօն, որ այժմ ֆրանսիական զօրքին էլ առաջնորդ էր, կարողացաւ փակել Յօրքթօունի մէջ անգլիական Կօրնվալիս զօրավարի բանակը։ Վաշինգթօն այնպէս էր կարգադրել իւր չուն, որ անգլիացւոց Կլինթօն հրամանատարը վերահաս չ՚լինէր իւր նպատակին, եւ լիովին յաջողեցաւ այս բանում։ Անգլիական հրամանատարը շատ ուշ ստացաւ Կօրնվալիսի յուսահատ նամակն, թէ «Անհնարին է ինձ երկար դիմանալ Յօրքթօունի մէջ. եթէ դուք չ՚կարանաք ինձ փրկել, ուրեմն պատրաստ կացէք ամենավատ լուր լսելու իմ մասին»։

Մի ուժգին ճակատամարտից յետոյ—19

հոկտեմբերի 1781—Կօրնվալիս զինաթափ եղաւ. գերուեցան 8,000 անգլիացիք և Վաշինգթօնի ձեռքն ընկաւ 200 թնդանօթ: Գերիներից ոչ ոք զրկանք չ՚կրեց, թէպէտ և յայտնի էր, որ ամերիկացւոց գերիներն փոքր ինչ առաջ չարաչար տանջուած էին անգլիացիների ձեռքով:

Այժմ ամեն տեղ համոզուեցան, որ Ամերիկայի անկախութիւնն արդէն մի ապահոված բան էր: Լաֆայէթ, որ մեծ փառք էր գրաւած վերջին պատերազմի մէջ, հետևեալն էր գրում Մօրէպա կոմսին. «Ողբերգութիւնը վերջացաւ. հինգերորդ արարուածն այս րոպէիս աւարտեցաւ»: Ֆրանկլին էլ այս բերկրաւէթ լուրն լսելիս, գոչեց. «Շնորհակալութի՛ւն ի սրտէ այս փառաւոր նորութեան համար: Երկրորդ օձին էլ խեղդեց իւր օրօրանի մէջ Հերակլէս մանուկը»:

Չուսկ յետոյ Անգլիան էլ համոզուեցաւ, որ այսուհետև կարելի չէր նուաճել գաղթականներին: Հին նախարարութեան յաջորդեց մի նորը. սա սկսաւ բանակցել և վերջապէս 3 սեպտեմբերի 1783 ամի Անգլիայի և Ամերիկայի ազատ Նահանգների մէջ գլուեցաւ խաղաղութեան մի դաշն, որով վերջիններս անկախ հրատարակուեցան առ միշտ:

---

ԺԶ

## ԲԱՆԱԿԻՑ ՀՐԱԺԵՇՏ ԱՌՆԵԼԸ

Ամերիկան իւր ազատութիւնը հերոսական ճգնութեամբ ձեռք բերաւ. այժմ պէտք էր նրան իմաստնաբար գործ դնել վաստակած բարիքը: Ով որ պատերազմի ընթացքում ուշի ուշով դիտել էր ամերիկացւոց ազգի որոշ յատկանիշները, նա անշուշտ կ'ասէր, թէ այսպէս բնաւորուած մի ազգ կարող կ'լինէր նոր գլուած ասպարէզի վրայ էլ յառաջ դիմել հաստատուն քայլով:

Այսու ամենայնիւ անմիջապէս պատերազմից յետոյ մի մեծ վտանգ վրայ հասաւ ազատ նահանգների համար:

Բանակի բունն կազմող մարդիկն այնպիսի զօրականներ էին, որոնք տարիներէ ի վեր օտարացած էին հանդիստ աշխատանքից: Ընդհանուր ժողովը վճռած էր այլ ևս մի քանի տարի վարձատրել նրանց. այնուհետև նրանք տուն պիտի վերադառնային և նորից զբաղուէին ընտանի գործերով: Նրանք հաւան չէին այս բանին և ուզում էին ապրել ֆրանսիական զինուորների պէս, որոնց վիճակը շատ նախանձելի էր թւում նրանց:

Ֆրանսիական բանակն ասես թէ մի սպատապարան էր ազնուական սպաների և քաջատոհմիկ երիտասարդների համար։ Ի՜նչքան տարբերվում էին այս ոսկեփայլ մարքիզներն, կոմսերն և կադէթներն անշուք ամերիկացի սպաներից. ամերիկացի սպաներն իրենց արտաքին երևոյթով չէին կարող մրցել մինչև անգամ Ֆրանսիական ռսկ հրացանակիրների և գրենադէրների հետ։

Այսպէս ուրեմն ինչքան որ ամերիկացի զօրականները հետամուտ էին լինում Ֆրանսիացիների փարթամ կեանքին, միայն իրենց պատակարգի դրութեան բարւոքումն ի նկատ առնելով ի վնաս ընդհանուր օգտի, այնքան էլ նրանց մէջ տարածվում էր այս կարծիքը, թէ զինուորների վրայ առաւել խնամք կ՚տարուէր, եթէ երկրի մէջ մի թագաւոր իշխէր, և թէ ուրեմն յաւ կ՚լինէր հեռացնել մէջ տեղից պատերազմի ժամանակ ձեռք բերուած ազատ սահմանադրութիւնն և մի միապետական իշխանութիւն հաստատել դրա տեղ։

Սակայն այս գաղափարն ընդհանուր ազգի ցանկութեան հակառակ էր և ծագում էր միայն մի ջոկ դասակարգի շահադիտական հաշիւներից։ Ճատ բնական է, որ այս դասակարգն իւր նպատակին հասնելու համար մի մարդու վրայ ուղ-

զած պիտի լինէր իւր աչքերը, և ո՞վ կարող էր լինել այս մարդն, եթէ ոչ Վաշինգթօն: Զօրքի որոշումն սպարապետին յայտնելու համար ընտրուեցաւ Լիւիս Նիկօլա անուն հաւչակաւոր զրնդապետը, որ և կատարեց իւրեն տրուած պատգամը մի ճարտար թուղթ գրելով Վաշինգթօնին: Մի սահմանադրութիւն մի թագաւորով վերևում կառավարութեան ամենալաւ ձևը կ՚լինէր Ամերիկայի համար, գրում էր նա. միայն թէ Վաշինգթօն բարեհաճէր նախ մի համեստ տիտղոս ընդունել և ապա թէ թագաւոր կոչուել:

Վաշինգթօնի տեղ եթէ մի ուրիշ մարդ լինէր, հարկաւ չէր կարանալ դէմ կենալ այս համբաւրուի երգին. հերիք էր միայն հաւանութեան մի ակնարկ տալ—և զօրքն իսկոյն թագաւոր կ՚հռչակէր իւր սպարապետին: Զօրականների բացականչութեամբ աթոռ բարձրանալով, նա կ՚ստիպուէր անշուշտ շահել նրանց սիրտն և յագեցնել նրանց ագահութիւնը: Եթէ Վաշինգթօն ականջ դնէր այն երգին, նրա փառքն առ միշտ կ՚արատուէր և ի շնորհուկս մի դասակարգի բոլոր ազգը կըվնասուէր: Պետութեան հիմնական օրէնքներն, իբրև համօրէն կամքի արտայայտութիւն, արդէն պատրաստ էին. դրանք պատերազմով էին ձեռք բերուած և ազգի արիւնով կնքուած, — և դրանց մէջ թագաւորի

մասին ոչ մի խօսք չ՚կար։ Հետևաբար Վաշինգ-թօնին առաջարկուած բանը պարզ ասելով ոչ այլ ինչ էր, բայց թէ մի ծանր պետական յան-ցանք։ Փոքր ինչ առաջ Անգլիայի բռնակա-լութիւնն էր, որ ուզում էր ազգային սահմա-նադրութիւնը տապալել. այժմ խնդրում էին, որ Վաշինգթօն էլ նոյն գարշելի փառութիւնը գործէր—Վաշինգթօն, որ հենց այդ բռնակա-լութեան դէմ էր մարտնչած, պատրաստ իւր կեանքն անգամ զոհելու ազգային իրաւունք-ների համար։

Ինչպէս որ վհուկները մի ոսկի պսակ էին շողացնում Մաքբէթի առջև, այնպէս էլ Վա-շինգթօնի դիմաց մի ոսկեճաճանչ արքայական թագ էին ցոլացնում այժմ։ Բայց Վաշինգթօն Մաքբէթ չէր և նրա սուրբ և վսեմ հոգու մէջ փառամոլութեան համար տեղ չ՚կար։ – Տես թէ ինչ կ՚տամ քեզ, միայն թէ մեղանչէիր. բախտիդ մեծութիւնը յանցանքիդ հաւասար կ՚լինէր։— Այսպէս էին հնչում սքողեալ ձևով մարդկային երջանկութեան թշնամու, դարևոր խաբեբայի, ինքնասիրութեան թիւնաւոր օձի խօսքերը։ Վաշինգթօն մի վայրկեան անգամ չ՚դայթակ-ղուեցաւ այդ փորձութիւնից և հետևեալ գիրն առաքեց Լիւիս Նիկօլա գնդապետին.

«Անակընկալ ապշութեամբ և վրդովմամբ

կարդացի ձեր արտայայտած մտքերն։ Հաւաստի եղէք, որ երբէք ամբողջ պատերազմի ընթացքում սիրտս այնքան չէ վշտացել, ինչքան որ այս րոպէիս, երբ իմանում եմ, որ այդպիսի գաղափարներ են շրջում զօրքի մէջ։ Նախատում եմ այդ գաղափարներն ամենախորին ատելութեամբ և յանդիմանում եմ դրանց ամենախիստ կերպով։ Առ այժմ կամենում եմ սըրտիս մէջ թաղել ձեր հաղորդածը. սակայն եթէ այս ուղղութեամբ յառաջ գնալու լինիք, ես կ'ստիպուիմ չերևան հանել եղելութիւնը։ Անհնարին է ինձ հասկանալ, թէ արդեօք ինչո՞վ կարող էի ձեզ առիթ տուած լինել այդպիսի մի առաջարկ անելու ինձ - մի առաջարկ, որ ըստ իս իմ հայրենի երկրին երբ և է հասանելի վտանգներից ամենաչարն է։ Գուցէ չըսխալուիմ, եթէ ասեմ, որ դուք չէիք կարող գտնել և ոչ մի մարդ, որին որ ձեր նախադիծն առաւել դժպհի թուէր, քան թէ ինձ։ Մի և նոյն ժամանակ զգացումներիս դէմ չ'մեղանչելու համար պարտ եմ այս էլ ասել, որ ոչ ոք ինձնից առաւել բարիք չէ ցանկանում բանակին։ Այս բարիքն ձեռք բերելու համար, ինչքան որ հնար լինի անել այդ սահմանադրական ճանապարհով, ես ոչ իմ ազդեցութիւնը պիտի խնայեմ, ոչ էլ իմ ուժերը, քանի որ շունչ կայ իմ մէջ։

Վասնորոյ երդմնեցնում եմ ձեզ—եթէ սիրում էք ձեր հայրենիքը, եթէ կամենում էք հոգ տանել ձեր անձի կամ ձեր ժառանգների մասին և ինձ էլ յարգած լինել—ի բաց վանեցէք ձեր սրտից այդ խորհուրդներն և այսուհետև այդպիսի մի առաջարկ մի՛ անէք ինձ—ոչ ձեր, ոչ էլ ուրիշների անուամբ»:

Այսպիսի իմաստով և այսպիսի հոգւով էին ներշնչուած և նրա հրաժարական խօսքերը, որով խաղաղութիւն էր աւետում զօրքին: Յիշում էր նրանց սխրալի գործերն պատերազմի դաշտերում, պատմում էր գովասանքով, թէ ի՛նչպէս նրանք սկզբում ամենատարբեր տարրերից բաղկացած, հետզհետէ տեղական նախապաշարումներն թօթափեցին և հայրենասէր եղբայրների մի ներդաշնակ մարմին կազմեցին, և վերջապէս յորդոր էր կարդում, որ խաղաղութեան մէջ էլ սուրբ և անարատ պահէին իրենց փառաւոր համբաւը: Խնդրում էր ի միտ առնել, որ խնայողութիւնը, առողջ միտքն և ջանասիրութիւնը—քաղաքային և մասնաւոր կեանքի այս առաքինութիւնները—նոյնպէս մեծարելի էին, ինչպէս և քաջութեան, տոկունութեան և անվեհեր համարձակութեան փայլուն յատկութիւնները պատերազմի մէջ:

«Պաշտօնատարք և զօրականք», ասում էր

նա, «փոյթ տարէք հաշտ եղբայրութեամբ ապրել քաղաքացիների հետ և զոհեցէք ամեն բան կանգուն և զօրեղ պահելու մեր ազգային սահմանադրութիւնը, եթէ ոչ—կործան է ազգի պարծանքն և պատիւն այժմ և յաւիտեան»:

Հայկերայթի ժամանակ մի առանձին հրաժեշտ առնելով պաշտօնաւորներից, նա վերցրեց իւր բաժակն և ասաց.

«Երախտագէտ սիրով եմ հրաժարական ողջոյն տալիս ամենքին. մաղթում եմ ի բոլոր սրտէ, որ ձեր գալոց օրերն էլ այնպէս երջանիկ և զուարթ լինէին, ինչպէս պատուաւոր և փառաւոր էին ձեր անձեալ օրերը»: Կենաց բաժակն պարպելուց յետոյ նա աւելացրեց. «Չեմ կարող մօտենալ ամեն մէկիդ բարև մնաս սեէրու. բայց եթէ բարեհաճիք մօտենալ ինձ և մեկնել ինձ ձեր աջերը, մեծ շնորհակալութեամբ կ'սեղմեմ դրանց»:

Ամենախորին յուզմամբ ոտքի ելաւ Կնօքս զօրավարը, որ սպարապետի մօտ էր նստած, և տուաւ նրան իւր դողդոջուն աջը: Վաշինգթօն, զգացումների թափից ընկճուած, մի բառ անգամ չ'կարացաւ արտասանել և ընկաւ զօրավարի պարանոցի վրայ. այնուձետև մօտեցան և միւս սպաներն, և ոչ մի աչք անարտօսր չ'մընաց այս բարևմնայի միջոցին:

Ընդհանուր ժողովի մէջ կային մի քանի անդամներ, որոնք պատմութեան զգուշաբար դէպքերն մտաբերելով, երկիւղ էին կրում, թէ Վաշինգթօն գուցէ չէր կամենալ հաշտութիւնից յետոյ առանց այլեւայլի մերկանալ իւր իշխանութիւնը։ Սակայն Վաշինգթօն համգիստաւոր նիստի ժամանակ իւր պաշտօնը վայր դնելով, ցոյց տուաւ, որ սնոտի էր այն երկիւղն։ Այս առթիւ խօսած ճառի մէջ նա ասում էր այլովքն հանդերձ.

«Իմ կասկածներն անձնական ուժերիս նկատմամբ ես կարացայ փարատել միայն մեր դատի արդարութեան վրայ ունեցած համոզմունքովս և Աստուծոյ օգնութեան վրայ դրած յոյսովս։ Այս պատերազմի պանծալի վախճանը մեր բոլոր փափագներին լրումն տուաւ։ Քանի շատ եմ մտածում այս գործի ամեն դժուարութիւնների վրայ, այնքան էլ աճում է իմ գոհութիւնն աստուածային նախախնամութիւնից և իմ շնորհակալութիւնն այն քաղաքացիներից, որոնք օգնել էին ինձ սիրով»։

Յետոյ նա ասաց.

«Ժամանելով իմ հասարակային պաշտօնավարութեան վերջին կէտին, անհրաժեշտ պարտք եմ համարում կնքել դրան աղօթքով առ Աստուած, որ նա օրհնութիւն պարգեւէ մեր սիրե-

լի երկրին և բոլոր այն մարդիկներին, որոնք որ կոչուած են սրա կառավարութեան գործերն հոգալու: Ինչ բան որ յանձնած էիք ինձ, վերջացաւ․ արդ վերադառնում եմ դէպի տուն, ազատելով այս պատկառելի ակումբից՝ ընդունել հրաժարական ողջոյնս և արձակել ինձ այն ամեն պաշտօններից, որով պատուած էիք ինձ մինչև այս օր»:

Վաշինգթօն այս ասելով, իւր սպարապետութեան գաւազանը նախագահին տուաւ: Նախագահն պատասխանեց նրա ճառին և ասաց․

«Ազատութեան դրօշակը նոր աշխարհի վրայ պարզելուց և թէ հարստահարիչներին և թէ հարստահարուողներին մի վսեմ դաս տալուց յետոյ՝ դուք թողնում էք պատերազմի դաշտն և տանում էք ձեզ հետ ձեր բոլոր հայրենակիցների օրհնութիւնը: Սակայն մի կարծէք, որ ձեր առաքինութիւնների և արժանիքների փառքը ձեր զինուորական պաշտօնի հետ պիտի վերջանայ․ ոչ—ամենահեռաւոր սերունդների սիրտն անդամ պիտի հրճուի այս փառքից դարէ ի դար: Մենք էլ միաւորում ենք մեր աղօթքը ձերինին, մեր թանգագին հայրենեաց բախտը բարձրելոյն հովանաւորութեան տակ դնելով, և մաղթում ենք, որ մեր քաղաքացիների հոգի-

ներն և սիրտերն արժանի հանդիսանան այն օգնութեան, որ շնորհում է մեզ Աստուած, մեզ մի երջանիկ ազգ շինելու համար»։

Վաշինգթօն մերժել էր իւր ռոճիկը. այժմ նա գիջաւ ընդունել իւր արած ծախքերի գումարն և այս առթիւ ներկայացրեց մի հաշիւ, որի մէջ ամեն մի ծախք մի սու մի նշանակուած էր։

Այսպէս վերադարձաւ Մօն-Վէրնօն այդ վսեմ, իմաստուն և բարի մարդն՝ իւր կեանքի մնացեալ տարիները հանգիստ մէնութեան մէջ կնքելու համար։ «Այժմ», գրում էր նա Լաֆայէթին, «հեռու օրուայ աղմուկից և հասարակային գործերի շշուկից, անձնատուր եմ լինում այն քաղցր զբաղմունքներին, որոնք օտար են թէ փառատենչ զօրականին և թէ այն նախարարին, որ գիշեր ցերեկ մաշվում է հարևան ազգերի բախտը կործանելու հոգսերով—առեւ թէ երկրագունդը հերիք չէր ամենքի երջանիկ բնակութեան համար։ Վեհապետի ողորմած ժպտից իւր ճակատագիրն գուշակող մի դրանիկ չէ կարող բնաւ մի գաղափար կազմել ինձ վիճակուած բարեբաստութեան մասին. ես ոչ ոքի չեմ նախանձում և ամենքին լաւութիւն եմ մաղթում։ Այս նշանաբանիս հետևելով, կամենում եմ հանդարտ դէպի վայր իջեցնել կեան-

քիս ընթացքը, մինչև որ հասնիմ պապերիս և հանգչիմ նրանց մօտ»:

Դարձեալ Մօն-Վէրնօնից Վաշինգթօն գրում էր Լաֆայէթին. «Մի բաժակ գինի, մի կտոր գառան միս միշտ կըգտանուի ինձ մօտ. թող բարով գայ ինձ մօտ, ով որ կարող է գոհ լինել դրանով. իսկ աւելի բան սպասողը՝ կը սխալուի»:

Պետութիւնն և մասնաւոր անձինք գուր ջանացին, որ Վաշինգթօն մի վարձատրութիւն ընդունէր: Այս միջոցին Վաշինգթօնի խորհրդով մի գետ նաւարկելի անելու համար կազմուած մի բաժանորդական ընկերութիւն հաստատութիւն էր ստացել ընդհանուր ժողովից. այս առթիւ միտք էր ծագած, որ ի նշան շնորհակալութեան մի պարգև ընծայուէր Վաշինգթօնին: Օրէնսդրական ժողովն որոշեց չիսուն հատ հարիւր սթէրլինգանոց արժէթուղթ յանձնել նրա տնօրէնութեան: Գործին մի այնպիսի ձև էր տրուած, որ եթէ Վաշինգթօն այդ պարգևն մերժէր, օրէնսդրական ժողովի պատիւը շօշափած կ'լինէր. ուստի նա յայտնեց ընդունելու յօժարութիւն, սակայն աւելացնելով, որ մտադիր էր մի հանրօգուտ հաստատութեան յատկացնել վերոյիշեալ գումարը: Վաշինգթօն այսպէս էլ արաւ. նրա կտակում ասուած էր, որ

այս գումարը նա թողնում է Միացեալ Նահանգների մէջ մի համալսարան հիմնելու համար։

---

ԺԷ

## ՎԵՐՋԻՆ ԺԱՄԱՆԱԿ

Վաշինգթօն արդէն չորս տարի է որ հանգիստ կեանքի բարիք էր վայելում գիւղի մէջ, երբ նրան դարձեալ հրաւիրեցին մի նոր օգնութիւն մատուցանել բովանդակ ազգին։ Նա ձայների միութեամբ Միացեալ Նահանգների Նախագահ էր ընտրուած։

Վաշինգթօն բնաւ չէր հաւատում, թէ ընդունակ կ'լինէր հոգալ և այս ծանր պաշտօնը։ «Ինչ որ յաջողեցաւ ինձ իբրև սպարապետի», ասում էր նա—«դեռ կարող չէ երաշխաւոր լինել, որ վարչութեան ասպարէզի վրայ էլ ձեռնհաս կ'լինէի արժանապէս գործելու»։

Բայց ազգն ուրիշ կարծիքի էր։ Վաշինգթօնի անթիւ անհամար յաղթութիւններից և հրովարտակներից, որոնք արձակուած էին պատերազմի ժամանակ, ազգը պարզ տեսնում էր, որ նա չէ թէ միայն մի մեծ զօրավար էր,

հայա և մի մեծ պետական մարդ։ Եւ յատկապէս այժմ, երբ պէտք կար առաջին փորձի ենթարկել վերանորոգուած ազգային սահմանադրութիւնը, ամենքը համոզուած էին, որ միայն Վաշինգթոնի հզօր բազուկն էր ընդունակ պետութեան ղեկը վարել։ Բարեկամները համոզիչ խօսքերով յորդորում էին նրան մյլ ևս մի անգամ զոհ բերել հայրենիքին իւր գիւղական հանգիստը, և նա դանդաղելով յօժարեցաւ վերջապէս։

«Այս օր», գրուած է նրա յիշատակարանում 16 Ապրիլի 1789 թ. ներքև, «ես բարև մնա՛ սասցի իմ առանձնական կեանքին և տնային բախտին։ Սիրտս այն աստիճանի պաշարուած է վշտադին թախծով և հոգսերով, որ ցաւս արտայայտելու համար մի խօսք անգամ չեմ գտնում։ Հետևում եմ ինձ ուղղուած հրաւէրին և գնում եմ Նիւ-Յօրկ իմ ձեռքից եկածն երկրիս համար անելու ամենաջերմ տենչով. բայց չեմ կարծում, որ կարող լինէի ի լրումն անել սրա յոյսերը»։

Նրա ճանապարհորդութիւնը մի յաղթական հանդէսի էր նման. առանձին շքով ընդունեցին նրան մանաւանդ Տրէնթօնի բնակիչներն, որոնք այժմ միաբան խնդութեամբ Դէլավարի անցքի տասներկրորդ տարեդարձն էին

տօնում։ Կամրջի վրայ խորհրդաւոր վերնագրով յաղթական կամարներ էին շինուած և սննադարդ փոքրիկ աղջիկներ ծաղիկ և փունջ էին սփռում այն ճանապարհի վրայ, որով պիտի անցնէր ազգի սիրելին։ Փառաւոր զարդարուած մի նաւ, որ ի նշան տասներեք նահանգների— տասներեք նաւաստիներից էր վարվում, Նիւ-Յօրկի նաւահանգիստը տարաւ նրան։ Նա ուրախանում էր իրեն ընծայուած ընդհանուր սիրուց, բայց չէր կարանում հալածել իր սրտից այն տրտմութիւնը, որ զգում էր առաջիկայ դժուարութիւնները մտաբերելիս. այս տրտմութիւնն յայտնի երևում էր նրա վշտահար դէմքից և բոլոր շարժմունքից։

Իւր ներածական ճառի մէջ նա ասում էր. «Չեմ կարող մտնել պաշտօնիս մէջ նախ և առաջ մի ջերմ աղօթք չմատուցած առ ամենակալ Տէրն, որ հսկում է ազգերի ժողովների վրայ և իւր նախախնամութեամբ լրացնում է մարդկային հանճարի թերութիւնները. աղաչում եմ նրանից՝ շնորհել օրհնութիւն Միացեալ Նահանգների ազգերին, հովանի լինել մեր նոր կառավարութեան, որ հաստատուած է ամենքիս բարերախտ անելու յուսով, և վերջապէս լոյս պարգևել այն պաշտօնեաների մտքին, որոնք որ այս կառավարութեան գործերը հոգա-

լու են կոչուած: Մի այսպիսի աղերս վերաուաքելով բարձրագոյն Էլին, որ ամեն բարութիւնների միակ աղբիւրն է, փստահ եմ, որ դուք էլ ամբողջ ազգի հետ ինձ ձայնակից կ՚լինիք»:

Ի վերջոյ նա ասում էր. «Անյեղլի ճշմարտութիւն է, որ մարդկային առաքինութիւնն և բախտն անլոյծ յօդերով են կապուած իրար հետ,—որ մեր երջանկութիւնը մեր պարտքերի կատարման մէջ է դրուած և որ վերջապէս—արդար և ազնիւ սկզբունքներով առաջնորդուող քաղաքականութիւնն է ազգերի բարօրութեան ամուր հիմքը: Երկինք երբէք բախտաւոր չեն անիլ մի ազգ, որ առ ոչինչ է դնում արդարութեան և կարգապահութեան մշտնջենաւոր օրէնքները. միայն այս առաքինութիւններին հետևելով կարելի կ՚լինի մեզ վառ պահել ազատութեան սուրբ հուրն, որ կոչուած ենք պաշտպանել այս օր»

Եւ իւր բարեկամ Լաֆայէթին գրում էր. «Միաբանութիւն, ազնւութիւն, ջանասիրութիւն և չափաւորութիւն—ահաւասիկ այն միջոցները, որոնցով կարելի է մի երջանիկ ազգ դառնալ. երջանկութեան այս շաւիղն այնպէս պարզ է և շիտակ, ինչպէս մի ճանապարհ»:

Վաշինգթօն նախագահութեան պաշտօնի մէջ էլ թօշակ չէր ընդունում և շատ դրժ էր,

որ կարող էր առանց դրամական հատուցման ծառայել իւր երկրին։

Սրբազան երկիւղածութեամբ իւր պաշտօնի գործերին ձեռնարկելով, նա դուն էր գործում այժմ հարթել իւր առջև դիզուած անթիւ խութ ու խոչերը. պատերազմից ի վեր ահագին պարտքեր էին բարդուել ազգի վրայ, վաճառականութիւնն և արհեստները մի կենսարար աղբեցութեան էին սպասում, երկրի սահմանները հնդիկների ասպատակից նեղվում։

Ֆրանսիական յեղափոխութեան սրտընդոստ պայթմամբ Ամերիկայի մէջ էլ մի նոր վտանգ ծագեցաւ։ Վաշինգթօն տեսնում էր, որ Փարիզի պատահարները նախկին վատ կառավարութեան բնական հետևանքն էին. սակայն չ'նայելով իւր սիրոյն դէպի մի քանի ֆրանսիացիք, նա համոզուած էր, որ այդ ազգի մեծագոյն մասը տակաւին զուրկ էր մի իրօք ազատ վիճակի հասնելու համար անհրաժեշտ բարոյական վսեմութիւնից։ Այսպէս նայելով ֆրանսիացւոց վրայ, Վաշինգթօն առաջուց մարգարէացաւ, որ ֆրանսիական մեծ յեղափոխութիւնը մի եղկելի վախճան պիտի ունենար։ Այս ազգի խօլութեան և իրար կեղեքելու հետամուտ արիւնուշտ վրէժխնդրութեան լուրերը լսելիս նա ասում էր. «Նախին վտանգ սպառնացող խութ ու խոչերը

դեռ բազմաթիւ են. նա կարող է մի ժայռի
զարնուել և խորտակուել. այնուհետև այս փո-
թորկին մի այնպիսի բռնակալութիւն կ՚յաջոր-
դէ, որ առաջնից էլ չար կ՚լինի»։ Ֆրանսիական
յեղափոխութեան մէջ երևցած առողջ գաղա-
փարները Ամերիկայի ազատութեան համար
մարտնչող ֆրանսիացիների ձեռքով էին բե-
րուած. սակայն այս գաղափարները չ՚կարացան
յաջողութիւն գտնել և ստիպուեցան տեղի տալ
այն զարհուրելի սարսափին, որ ժողովրդի գա-
զանային ապականութեան յայտարարն էր։ Վա-
շինգթօն մինչև իւր սրտի խորքը դղրդուեցաւ
Լիւդովիկոս ԺԶ-ի ողորմ մահից. իւր օրումն նա
այնպէս շանթահարուած և ընկճուած չէր, ինչ-
պէս որ այս չարաբաստիկ թագաւորի գլխատման
գոյժն առնելիս, ասում էին նրա մերձաւորքը։

Վերոյիշեալ նոր վտանգն այս էր, որ Ա-
մերիկայի մէջ էլ ֆրանսիական Յակոբեաններ
վայրագ գաղափարներով տոգորուած ընկերու-
թիւններ էին յառաջ եկել։ Սրանք էին որ հը-
րատարակեցին «Վաշինգթօնի թաղման հան-
դէսն» վերնագրով մի պատկեր, ուր նա նկա-
րուած էր գիլյօտինի ներքև գլխակոր։ Այս մար-
դիկը բնաւ չէին ծածկում, որ կամենում էին
կործանել Վաշինգթօնին և տապալել կանգուն
վարչութիւնը։

Թշնամի կուսակցութիւնների մոլեգին խրախնդման ժամանակ Վաշինգթօն նոյնպէս ամուր կեցաւ, ինչպէս որ ամուր կանգնած էր երբեմն Դելավարի վրայ, երբ կատաղի մրրիկն և դիզադէզ սառոյցները սպառնում էին խորտակել նրա նաւը:

Ֆրանսիայի արիւնահեղ կոտորածների ազդած արհաւիրքն այնպէս մեծ էր Ամերիկայի մէջ, որ այս երկրի ծայրայեղ դասու ազդեցութիւնն հետզհետէ թուլացաւ և վերջապէս բոլորովին չիջաւ:

1793 թ. Ամերիկայի ժողովուրդն երկրորդ անգամ նախագահ ընտրեց Վաշինգթօնին: Նրա ութնամեայ գործունէութիւնն անբաւ բարիք շնորհեց երկրին և օրինակ դարձաւ յաջորդ նախագահների համար, որոնցից ամենալաւերն միշտ հետևած են և հետևում են Վաշինգթօնի վարչական եղանակին:

Երբ Վաշինգթօն իմացաւ երկրորդ քառամեակից յետոյ, որ մտադիր էին երրորդ անգամ նրան յանձնել պետութեան գերագոյն պաշտօնը, նա հրաւէր կարդաց հայրենակիցներին առաւել ժիր ձեռքերի մէջ դնելու պետութեան ղեկն և յայտնեց հրապարակաւ, թէ չէր կամենում ընտրուիլ երրորդ անգամ: Այս առթիւ նա հրաժեշտ էր առնում ազգից, հետևեալ ոսկի խօսքերն ուղղելով նրան.

«Մարդկային երջանկութեան հզօր հաստարանները, քաղաքային բարօրութեան անհրաժեշտ սիւները—կրօնն և բարոյականութիւնն են. ոչ թէ միայն բարեպաշտ հաւատացողը պարտ է յարգել և մեծարել դրանց, հապա և իմաստուն քաղաքագէտը։ Ես մի հարց միայն կ՚առաջարկեմ—ո՞ւր կ՚մնայ սեփականութեան, պատուի և կեանքի ապահովութիւնն, եթէ մեռնէր մեր մէջ կրօնի զգացմունքը, որ ճշմարտութիւնը յերևան հանելու միակ միջոցն է դատարաններում։ Ոմանք ասում են թէ բարոյականութիւնը կարող է առանց կրօնի էլ տևել. սակայն այսպիսի մի կարծիք յայտնելուց առաջ պէտք է, որ դա մի լաւ քննուի։ Ինչքան էլ հզօր լինէր բարի դաստիարակութեան ներգործութիւնը մի քանի անհատների վրայ, այսու ամենայնիւ խելքն և փորձն անզօր են ապացուցանել, որ ամբողջ մի ազգ կարող լինէր բարոյական մնալ առանց հաւատքի»։—Ճառի վերջաբանում նա ասում էր. «Իմ վարչութեան տարիների վրայ յետ նայելով, ես վկայ եմ կոչում իմ խիղճը, որ երբէք գիտութեամբ չեմ սխալած. սակայն ես լաւ եմ ճանաչում իմ պակասութիւններն և խոստովանում եմ, որ գուցէ վրիպած լինիմ մի քանի բաների մէջ։ Ինչ էլ լինէին իմ այս վրիպանքս, ջերմ սրտով աղա-

չում եմ Արարչից—չափաւորել և հեռացնել մեզնից դրանց չար հետևանքը։ Ձեզնից հրաժեշտ առնելիս ես կամենում եմ յուսալ, որ դուք ներող աչքով կ'նայէք թերութիւններիս վրայ և իմ տկարութեան կ'վերագրէք քառասունհինգ տարուայ ջերմեռանդ ծառայութեանս մէջ արած սխալներս, մոռացութեան տալով դրանց, մանաւանդ որ արդէն պատրաստ եմ յաւիտենական հանգստեան օթևանը չոգելու»։

Տակաւին երկու և կէս տարի հանգիստ կեանք վայելեց Վաշինգթօն ագարակի մէջ։ 12 դեկտեմբերի 1799 ձիով շրջելիս մի փոթորկից բռնուելով մրսեցաւ։ Գործ դրուած դարմանները չ'օգնեցին. հիւանդի շնչառութիւնը ծանրանում էր. նա մի ջինջ հայեացքով և հանգիստ ձայնով ասաց բժշկին. «Հենց հիւանդութեանս սկզբից գիտէի, որ չիպիտի ազատուիմ. մահս ծանր պիտի լինի, բայց չեմ երկնչում։ Շունչս կարող չէ երկար տևել»։ Երեկոյեան 9 ժամին նա անցաւ ի հանգիստ յաւիտենական 68 տարեկան հասակում։

Մահուան օր էր 14 դեկտեմբերի 1799։

Կտակի մէջ Վաշինգթօն ազատութիւն էր շնորհում իւր բոլոր ստրուկներին, առանձին յիշատակութիւն անելով ծերերի և հիւանդների

նկատմամբ, և մի նշանաւոր գումար էր թող-նում մի համալսարանի և մի որբանոցի հիմ-նարկութեան համար:

1799
−1732
67



## ԺԸ

## ՕՐՀՆԵԱԼ ԼԻՆԻ ՆՐԱ ՅԻՇԱՏԱԿԸ

Ջօն-Մարշալ դողդոջ ձայնով յայտնեց ազ-գային ժողովին Վաշինգթօնի մահը: Այնպէս մեծ էր ունկնդիրների յուզմունքը, որ պէտք եղաւ նիստը վերցնել: Ննջեցեալի վերջին կամ-քին համեմատ՝ նրա մարմինը թաղեցին իւր պարտէզի մէջ, առանց շքի և որ և է դամ-բանական ճառի: Ազատ որմաշէնները (ֆրան—մասօնները), որոնց ազնիւ կանոններին նա միշտ հետևած էր, մի դամբլուղ սպիտակ վարդ ցա-նեցին նրա գերեզմանի վրայ անբարբառ լռու-թեամբ, և այս եղաւ թաղման բոլոր հանդէսը:

Ազգային ժողովի դահերէցի աթոռն սևով պատուեցաւ և երեսփոխանները սուգ կապեցին մինչև նոյն տարուայ նստաշրջանի վերջը: Վե-րոյիշեալ Ջօն-Մարշալ մի սրտառուչ ներբող կարդաց ի յաւերժական յիշատակ Վաշինգթօնի,

և երեսփոխանները միաբան յօժարութեամբ ընդունեցին նրա առաջարկին — կարգել մի յանձնաժողով, որն որ մտածէր, թէ ինչով կարելի էր աւելի լաւ մեծարել Վաշինգթօնի յիշատակը— յիշատակն այն մարդու, որ առաջին էր պատերազմի մէջ, առաջին էր խաղաղութեան ժամանակ և առաջին էր հայրենակիցների սրտում:

Ամփոփենք համառօտիւ ինչ որ ասում է Գերվինուս պատմաբանը Վաշինգթօնի բարուց խորիմաստ և ճարտար նկարագրութեան մէջ:

Ինչ էր Վաշինգթօնի մէջ բնակող այն ծածուկ զօրութեան պատճառը, որ իշխում էր մարդիկների և հանգամանքների վրայ:—Այս էր, որ նա գիտէր տեղի տալ ուրիշների կարծիքին և ըստ պատշաճի յարգել ամեն մարդու իրաւունք և պահանջ, — որ նա մի ծանրաբարոյ և հաստատամիտ մարդ էր,—որ նա խստիւ հետևում էր պարտքի զգացման և որ նա վերջապէս, պաշտում էր իւր սրտի մէջ խղճի երկնային կայծը, որին հնազանդիլը կանոն էր դրած իւր համար անտխական հասակից:

Վաշինգթօն խորին ատելութիւն էր զգում խաղի դէմ, որ անուանում էր ամեն չարիքների աղբիւր, բնաւորութեան և առողջութեան ապականիչ, ժլատութեան որդի, անիրաւութեան եղբայր, կորստեան հայր:

Ազգի բարօրութիւնն ամեն բանից վեր դասելով, նա նայում էր պատերազմի վրայ, միայն իբրև խաղաղութեան հասնելու մի միջոցի վրայ. ռազմական յաղթանակներն ինքն ըստ ինքեան դատարկ սնոտիք էին թւում նրա աչքին, եթէ նրանք ժողովրդի ազատութեան և առողջ զարգացման երաշխաւորութիւն չը տային:

Նա կարող էր իրաւամբ ասել, որ ոչ մի ժամանակ բարեկամութեան կամ ազգակցութեան աչառանքով չէր դրդուած պաշտօններ բաժանելիս. Թշնամիներն անգամ խոստովանում էին, որ այս նկատմամբ ոչ մի մարդ նրա չափ արդարութիւն չ՚ունէր:

Ի՜նչպէս ախորժելի է տեսնել, որ նա իւր փառքի ամենաբարձր աստիճանի վրայ անգամ կարօտ էր զգում պատերազմի դաշտից դէպի մշակութեան դաշտը վերադառնալու, — որ նա փափագում էր իւր այգիների և թզենիների ստուերի տակ հանգիստ առնելու, հասարակային կեանքի բարձունքից դէպի ընտանեկան շրջանի զբօսանքներն իջնելու—խորասուզուելու առտնին կեանքի քաղցր մէնութեան մէջ, որի շնորհած վայելքն անյայտ են փառամոլ գինուորին և բազմատանջ պետական անձին:

Քրիստոնէական աշխարհը հազիւ թէ կա-

րող է որ և է գործօն մարդու կեանքի մէջ ցոյց տալ մեզ կրօնական բարեպաշտութեան և խոնարհութեան մի երկրորդ օրինակ՝ Վաշինգ-թօնին հաւասար, որ արդարև սուրբ սրտով էր նկրտում նմանող լինել Փրկչին—արդարու-թեան, եղբայրսիրութեան, հեզութեան և հոգու հանդստութեան մէջ։

Ո՛ւր էլ դարձնէինք մեր աչքը նրա կեանքն ուշի ուշով զննելիս, ամենուրեք կ՚տեսնենք նրա բնաւորութեան անպաճոյճ պարզութիւնը, կը տեսնենք նրա սրտի վսեմ ազնւութիւնը, որ մեզ դէպի բարին է դրդում։ Առաքինութեան վրայ երկրայողներն ափիբերան եղան նրանից. Նրա կեանքն իւր անշուք նըրութեամբ նսեմա-ցրեց ամենայն ինչ սուտ փառք և փայլ և նո-րից տուաւ պատմաբաննին հասարակային ան-ձերին քննելու մի առաւել բարձր չափ, որ դրեթէ իսպառ կորած էր բռնակալութեան դա-բերում։ Մի Նապօլէօնի գործունէութեան շլա-ցուցիչ ճառագայթները թէպէտ առ ժամանակ խանգարեցին այս չափը, բայց չ՚կարացան եղ-ծանել առ միշտ։—Այսպէս Գերվինուս։

Շնորհապարտ հայրենիքն Վաշէնգթօնի— այս մեծ, իմաստուն և բարի մարդու պատկերը յաջորդ սերունդների աչքի առջև յաւէրժացնելու համար՝ զանազան տեղ մարմարեայ արձաններ

կանգնեց նրա յիշատակին. Նրա պատկերներն այս օր էլ երևում են թէ պալատների և թէ համեստ տնակների մէջ:

«Շատ աննշան է», ասում է մի ամերիկացի, «այն մարդիկների թիւն մեզ մօտ, որոնք իրենց տան մէջ մի պատուի տեղ չ'շնորհէին մեր մեծ բարերարի պատկերին, – բարերարի, որ մեզ համար նոյնն եղաւ, ինչ որ Լիկուրգն էր սպարտացւոց համար և Սոլօն աթէնացւոց համար: Եթէ նա ալևոր հնութեան մէջ ապրած լինէր, յետնորդք անմահութեան պսակ կ'հիւսէին նրա ճակատին, յաթոռ անմահութեան կ'ամբառնային, իբրև Աստուած կ'պաշտէին»:

Եթէ Վաշինգթօնի պատկերն միշտ անջինջ մնայ ամերիկացւոց սրտի մէջ, որոնք մեծ հայրենասէրի օրինակին հետևելով արդէն բոլոր աշխարհի հիացման արժանի գործեր են արած,— այս ազգն չ'երևակայած երջանկութեան կ'հասնի: Ցանկանք, որ դա՜ միշտ Վաշինգթօնի ցոյց տուած ճանապարհով յառաջ դիմէ և մաղթենք, որ նրա վսեմ պատկերը միւս ազգերի համար էլ հետևութեան օրինակ լինի, մանաւանդ այն մարդիկների համար, որոնք ինչ կառավարութեան տակ և ինչ կ'ուզէ լինէին— իշխան, նախագահ, նախարար, զօրավար, պատ-

ըխարք, վիճակաւոր—յատկապէս ժողովրդի բարօրութեան վրայ հսկելու են կոչուած:

Սակայն մեր ամենաջերմ մաղթանքն և սրտագին փափագներն մանուկ սերնդին են վերաբերում: Ո՜վ սիրելի մանուկներ, պահպանեցէք ձեր սրտի սրբարանին մէջ այս պանծալի քաղաքացու պատկերը, ջան դրէք նմանող լինել նրա առաքինութիւններին և ապա թէ սովորեցէք նրանից, թէ ինչպէս պէտք է սիրել ազգն և հայրենիքը:



